# Նավաստու երգը

Վ. ԿԱՐԵՆՑ

Ես նավաստի եմ, օվկիանի որդի,
Իմ տունը նավն է կապույտ ջրերում.
Աչքս սովոր է դարձել կապույտին,
Եվ ամենից շատ ես ծովն եմ սիրում:

Ինձ օրորում է ծովային քամին
Եվ թանձր ու խոնավ մառախուղն անհուն.
Ես չեմ սարսափում փոթորկի ժամին.
Փոթորկի մեջ եմ ես միշտ զորանում:

Չեն դավաճանել բազուկներս հաղթ,
Չի վրիպել իմ գնդակը երբեք,
Տեսել եմ քանի, քանի՜ ծովամարտ,
Հաղթությամբ դարձել հայրենի եզերք:

Ես նավաստի եմ, որդին օվկիանի,
Իմ տունը նավն է կապույտ ջրերում,
Բայց ես կապված եմ հողին հայրենի,
Հայրենի սերն է ծովում ինձ պահում:






Կոմունիստական պարտիայի գործի պայքարին՝ եղի՛ր պատրաստ

№ 7

ՀՈՒԼԻՍ

1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Զբոսանքից հետո։

Ֆոտո՝ Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

# ՎՈԼՈԴՅԱ ՈՒԼՅԱՆՈՎ*

(Հիշողություններ Վ. Ի. Լենինի մանկական և պատանեկան տարիների մասին)

Ն. ՎԵՐԵՏԵՆՆԻԿՈՎ

Նկ. Ա. ԴԱՎԻԴՈՎԱՅԻ

## «ԿԱԶԱԿ ԿԱՄԱՎՈՐԸ»

Հիշում եմ մեր մանկական զբաղմունքներից մեկը։

Վոլոդյան, ես և մյուս մորաքրոջս տղան մեզ պատկերացնում էինք «կազակ կամավորներ»։

Փայտե երկար նիզակներով զինված, մենք սլանում էինք դաշտերով, մարգագետիններով ու ձորակներով։ Ինչ-որ մի տեղ ավազակների մոտ դադար էինք առնում և սնվում հետներս բերած բանջարեղեններով ու հատապտուղներով։

Վոլոդյան յուրաքանչյուր խաղին կարողանում էր առանձին հետաքրքրություն տալ։ Նրա առաջարկով մեզանից ամեն մեկը վերցրել էր մի որևէ գրական հերոսի անուն։ Վոլոդյան ընտրել էր Գոգոլի Տարաս Բուլբան և Դև ձին (մենք երևակայում էինք, որ բոլորս էլ ձի ունենք)։ Ես Լերմոնտովի Կազբիչն էի և իմ ձիու անունը Ղարագյոզ էր։ Երրորդն իր անունն ու ձին ընտրել էր Մայն-Ռիդի մի վեպից, որը չեմ հիշում։

Շատ լավ հասկանում եմ, թե ինչու, առանց երկար մտածելու, Վոլոդյան ընտրեց Տարաս Բուլբային։ Նախ այն պատճառով, որ Տարաս Բուլբան կազակ էր, և մենք էլ «կազակ կամավոր» էինք խաղում, երկրորդ, որ Վոլոդյան սիրում էր նրան իբրև ամուր կամքի տեր և արտասովոր քաջ մարդու։

Գոգոլի, Լերմոնտովի, Մայն-Ռիդի հերոսների շարքում կատարվող «կազակ կամավորների» արշավանքները հետագայում վերածվեցին հետազոտական էքսկուրսիաների, որոնց նպատակն էր՝ գտնել ձորերի, ավազակների և գետերի ակունքները։ Մի անգամ ոտքով գնացինք հետազոտելու Ուշնա գետի վտակը։ Այստեղ մեզ օգնեցին մեր նիզակները. հենվելով դրանց վրա, մի ափից մյուսն էինք ցատկում, ճանապարհ ընտրում ձորի ոլորապտույտ, մացառապատ եզրերով։

Չերեմիշևո գյուղի մոտ, գետի ափին, կար մի գերեզմանաթումբ, որը կոչվում էր «Մագնիսական սար»։ Մենք այդտեղ գնացինք նավակով։ Ուշնա գետն այդ մասում այնքան էր նեղացել, որ նավակի եզրերը կպչում էին ափերին, և տեղ-տեղ նավակը քաշ տալով էինք անցկացնում։

Մեր ավագ ընկերներից մեկը հարցրեց, թե ինչու մոխրի այդ թումբը կոչվում է «Մագնիսական սար»։ Վոլոդյան տեղն ու տեղը, առանց երկար մտածելու պատասխանեց.

— Գուցե այն պատճառով, որ նա ձգո՞ւմ է մեզ։

Վոլոդյան մի քանի խաղ չէր սիրում, և մենք թողնում էինք դրանք, ասելով.

— Դե՛, աղբյուրի առաջ թումբ հետո էլ կկապենք, Վոլոդյային դուր չի գալիս։

Եվ միայն Ուլյանովների մեկնելուց հետո, ընկած տրամադրությամբ գնում էինք «Պոլարնյա աղբյուրը» բանդ կապելու, որպեսզի ցրեինք անջատման վիշտը։

## ԵՂԲԱՅՐՆԵՐՆ ՈՒ ՔՈՒՅՐԵՐԸ

Վոլոդյան տաս տարեկան տղա էր, բայց իր տարիքին անհամապատասխան հոգատարությամբ ու սիրալիրությամբ էր վերաբերվում կրտսեր քրոջը։ Վոլոդյան նրան ասում էր Մանյուշա, շեշտելով վերջին վանկը։ Հետագայում նա Մարիա Իլյինիչնային ասում էր Մանյաշա։

Վոլոդյայի կրտսեր եղբորը՝ Միտյային հիշում եմ այն ժամանակվանից, երբ նա դեռևս չորս տարեկան էր։ Միտյան գեղեցիկ էր և աչքեցուցիչ չափով ժիր, ինչպես սնդիկ։ Երբ նա որևէ բան էր պատմում, աշխուժությունից շնչասպառ էր լինում և նույնիսկ սկսում էր կակազել։ Մորաքույր Մաշան հանգիստ, մեթոդիկ կերպով նրան ստիպում էր, որ առանց շտապելու և կապակցված պատմի։ Մորաքույր Մաշան օժտված էր դաստիարակչուհու հազվագյուտ ձիրքով։

Միտյան շատ էր հետաքրքրվում որսորդությամբ և ամբողջ ժամանակ պտույտ էր գալիս մեծերի շուրջը։ Նա սովորաբար գիտեր բոլոր մանրամասնությունները, թե որսը ով է խփել, երբ, որտեղ և ինչ հանգամանքներում։ Սակայն դատարկ որսապարկերով վերադարձող որսորդներին հաճախ տրվող այն հարցին, թե «Ի՞նչ եք սպանել», Միտյան ստանում էր մեկ պատասխան՝ «Ժամանակ»։ Բայց դրա փոխարեն ինչքա՜ն էր ուրախանում, երբ ասում էին, թե խփել են երկու խլահավ կամ երեք կտցար։

* Սկիզբը «Պիոներ» №№ 4, 5, 6։

Օլյայի հետ ես շատ էի մտերմացել և միշտ էլ անհամբերությամբ էի սպասում նրա Կոկուշկինո գալուն։ Իսկ երբ նա չափահաս աղջիկ էր, ապրում էր մեզ մոտ՝ Կազանում և սովորում էր երաժշտական դպրոցում։

Օրեցօր ավելի զարմանալի համբերությամբ նա ժամերով նստում էր դժվարին վարժությունները լուծելու։ Այնպիսի խստությամբ էր կատարում դասատուների պահանջները, որ ոչ մի կերպ չէր կարելի նրան համոզել նվագելու որևէ այլ, չհանձնարարված ստեղծագործություն։

Ի տարբերություն Վոլոդյայի, Օլյան մանկությունից սկսած շատ հանգիստ ու ինքնամփոփ էր և այս տեսակետից ավելի շատ նման էր Շուրա Ուլյանովին։

Ալեքսանդր Իլյիչին հիշում եմ իբրև լուրջ և կենտրոնացած պատանու։ Նա սիրում էր շախմատ խաղալ և միաժամանակ խաղում էր երեք հոգու հետ, առանց տախտակին նայելու։ Նա ամենից ուշ էր պառկում քնելու և վաղ էր վեր կենում։ Մենք չէինք նկատում, թե երբ է քնում Շուրան։ (Ալեքսանդր Իլյիչին մեր ընտանիքում ասում էին Շուրա, եղբորից՝ Սաշայից զանազանելու համար)։ Նա սիրում էր բնությունը և տարվելով որսորդությամբ, ամբողջ օրերով բացակայում էր։

Ուլյանովների երեխաների մեջ ամենամեծը Աննչկան էր։ Առաջ անցնելով, ասեմ, որ 1887 թվականին Աննա Իլյինիչնան աքսորված էր Կոկուշկինո և ապրում էր ոստիկանության հսկողության տակ։ Այդ պատճառով մեզ հաճախ էին այցելում կառավարության ներկայացուցիչները, որոնք ցանկանում էին ոչ միայն անձամբ տեսնել Աննա Իլյինիչնային, այլև լսել նրա ձայնը։

Ծիծաղելով գավառապետի վրա, որը բացատրում էր, թե չի կարելի Կոկուշկինոյից հեռանալ, Աննա Իլյինիչնան հարցրեց.

— Ուրեմն կալի հետևի պուրա՞կն էլ չի կարելի գնալ։

— Ինչո՞ւ չէ, բայց տասնհինգ վերստից ոչ հեռու,— ասաց նա։

— Իսկ եթե ես գնամ ավելի շատ, ասենք տասնվեց վերստ հեռու, ի՞նչ կլինի այն ժամանակ։

— Բանտարկություն,— անմիտ ժպիտով պատասխանեց գավառապետը։

Այս զրույցը դուր եկավ երիտասարդներին։ Մենք էլ էինք ուզում ծիծաղել գավառապետի վրա։

## ՈՒՂԵՎՈՐՈՒԹՅՈՒՆ ԳԵՏԻ ՄԵՋՈՎ

Շուրան շատ էր պատմել Մյոշա գետի մոտ եղած գեղեցիկ վայրերի մասին և այնպես հետաքրքրել բոլորիս, որ որոշեցինք գնալ այնտեղ։ (Մյոշան Կամայի վտակն է, որը տասնյակ կիլոմետրերով հեռու է Կոկուշկինոյից)։

Գնացինք և չփոշմանեցինք։ Բոլորս էլ այն կարծիքին էինք, որ այդ վայրն ավելի գեղատեսիլ է, քան նույնիսկ մեր սիրելի Կոկուշկինոն։

Դուրս գալով անտառից, ամենագեղեցիկ բացը, որ տեսանք, դա լայնարձակ մարգագետինն էր, որին մի առանձին գրավչություն էին տալիս փարթամ ու սաղարթախիտ ծառերը։ Մարգագետնից այն կողմ պարզորոշ երևում էր գետը, որի ափերի մեջ փայլփլում էր ջուրը։ Հանդիպակած ափով ձգվում էր բարձրուղեշ սոճիների նեղ շարքը, որը շրջված ձևով անդրադարձել էր ջրի մեջ և հրապուրում ու կանչում էր մեզ։ Ափսոսալով, որ նավակ չկար հետներս և չէինք կարող անցնել մյուս ափը, մենք գնացինք գետի երկարությամբ և հասանք մացառուտ ծառերով ծածկված բլրակներին։ Այդ վայրը նույնպես շատ գեղատեսիլ էր և կոչվում էր «Պոզուվալո»։ Ես հիացած բացականչեցի.

— Ոնց որ Տուրգենևի Բեժին մարգագետինը լինի։ Ասես դեկորացիա է։

Վոլոդյան առարկեց, թե Բեժին մարգագետինն բոլորովին էլ նման չէ, բայց ընդունեց, որ գեղեցիկ տեսարան է և, իհարկե, բոլոր տեսակի դեկորացիաներից ավելի լավ։

Հետագայում մենք շատ անգամ գնացինք Մյոշա գետի ափը և նույնիսկ նավակ տարանք այնտեղ։

## «ՆՈՏԱՆ ԽԱՂԵՐ»

Արևամուտից հետո Կոկուշկինոյի բոլոր բնակիչները՝ թե՛ մեծերը և թե՛ փոքրերը սովորաբար հավաքվում էին մեծ տան պատշգամբում և նստում ծաղկանոցի նստարաններին։ Մորաքույր Մաշան էլ, մայրս էլ ծաղիկներ շատ էին սիրում։ Բացածաղիկներ, հափրուկներ, մեմփրածաղիկներ, բուրավետ սխտորիկներ, նիկոցիաններ, հնդկոտեմներ և այլ ծաղիկներ օդը լցնում էին հաճելի բուրմունքով։ Գեորգինաներն ու փիփերթները բարձրանում էին ծաղկաթմբի մեջտեղում։

Նախապես ճաշակելով մեծերի հետ խաղալու հաճույքը, երեխաներս վազում էինք տուն, նրանց համար աթոռներ և նստարաններ բերելու։ Ինք-

ները նստում էինք պատշգամբի աստիճանների վրա։ Սկսվում էին այսպես կոչված «նստած խաղերը»։

Իլյա Նիկոլաևիչը կանչում էր Շուրային, Անյուտային և իմ քույր Մաշային, որոնք առանձնանում էին վերևի, հյուսիսային պատշգամբում. այնտեղ զով էր։

Փոքրերից մեկը առաջարկում է խաղալ «սինոնիմներ»*։

— Ինչ արած։ Թեև սխալ կլինի այդպես կոչել այդ խաղը,— ասաց Իլյա Նիկոլաևիչը,— ավելի հարմար է կոչել «օմոնիմներ»**, բայց քանի որ այդ անունն արմատավորվել է, թող այդպես էլ լինի։ Իսկ այժմ օգտվենք Օլյայի ուշանալուց և շատ մտածենք, թե նրան ինչ առաջարկենք։



Սկսվում էին «նստած խաղերը»:

Որոշեցինք վերցնել «փող» բառը, որը ոչ մի անգամ չէինք մեկնաբանել։

— Առաջին, փող, որով գնումներ են կատարում (դրամ)։

— Երկրորդ. փողը նշանակում է նաև վիզ։

— Կա նաև երրորդը,— ասաց Վոլոդյան։

— Էլ ի՞նչ. գլխի չեմ ընկնում։

— Փող, որով նվագում են. նվագելու գործիք խողովակ,— ասաց Վոլոդյան։

Օլյան եկավ և արագ գուշակեց պահված բառը՝ մորաքույր Մաշայի տված երեք բնորոշումով. առաջին, լինում է և՛ թղթից, և՛ մետաղից. երկրորդ՝ մարմնի մաս է. երրորդ՝ ձայն է արձակում։ Գուշակելով դարձյալ մի քանի նույնահնչյուն բառեր անցանք ուրիշ խաղի՝ «առածներին», որը դարձյալ ոչ ճիշտ անուն էր կրում։ Այդ պատճառով հաճախ առածի փոխարեն ոտանավորներ էինք գուշակում։

Այս խաղի ժամանակ գուշակողը հերթով ցանկացած հարցերն էր տալիս բոլոր խաղացողներին։ Խաղացողները ոտանավորից կամ առածից մի կտոր պիտի ասեին, որտեղ օգտագործված լիներ գուշակվող բառը։

Լճակը տանող ոլորապտույտ արահետի մոտ աճում էին հինավուրց լորենիներ, որոնք տնկված լինելով իրար մոտ, տաղավար էին կազմել։ Այստեղ էր առանձնանում նա, ով պետք է գուշակեր պահված բառը։

Գնաց Շուրան։ Այս ու այն կողմից լսվեցին առաջարկություններ.

— «Ահա շքամուտքը»,—գոչում են երեխաները։

— Չեղավ, դա դժվար է գտնելը. «շքեղ», «հանդիսավոր»...։

— «Այս տարի եղանակը աշնանային էր», «Եվգենի Օնեգինից»,— առաջարկեց քույրս՝ Մաշան։

— Սաշան Նեկրասովի և Պուշկինի խոսքերն անմիջապես կգուշակի. հարկավոր է այնպիսի բան ասել, որ ավելի դժվար լինի և համեմատաբար քիչ հայտնի,— առարկեց Վոլոդյան։

Վերջապես կանգ առանք Սաշա Վերեսենիկովի երգիծական ոտանավորի տողի վրա։

Կորավ մոտ կարկանդակը,
Եւ խավարում գիշերվա,
Անհետ կորավ կարկանդակը,
Ինչպես կորավ, չիմացա՜ն:

— Լավ, թող մեր Սաշան գուշակի այն, ինչ հորինել է ձեր Սաշան,— դառնալով դեպի մայրս, կատակով ասաց Իլյա Նիկոլաևիչը։

— Վոլոդյային կտանք «խավարում» բառը, այս հոլովով այդ բառը որևէ տեղում օգտագործելն այնքան էլ հեշտ չէ։

Բայց Վոլոդյան պատվով դուրս եկավ ծանր դրությունից։ Շուրայի հարցին, թե ինչու է ծնկի

* Սինոնիմներ—բառեր, որոնք տարբեր են արտասանվում, բայց արտահայտում են միևնույն իմաստը, օրինակ՝ աչք, ակն։

** Օմոնիմներ—միատեսակ հնչյող, բայց իմաստով տարբեր բառեր, օրինակ՝ այր, այր։

եկել, Վոլոդյան, չթարթելով անգամ աչքերը, պատասխանեց.

— Երեկ երեկոյան ջարդեցի ոտքս։ Լույս չկար. դժոխային խավարում ուզում էի պառկել քնելու և կպա աթոռին։

«Խավարում» բառը պատասխանում զետեղվեց այնքան բնականորեն, որ գուշակելը դժվար էր։

Սակայն Իլյա Նիկոլայեվիչի խոսքերի վրա Շուրան գուշակեց ոտնավորը և մեծ բավականություն պատճառեց մեզ։ Խաղից դուրս եկավ Իլյա Նիկոլայևիչը, որովհետև խիստ կարգ էր սահմանված. խաղից դուրս բերել նրան, ում ասած խոսքերից գուշակում էր մտքում պահածը։

Մենք խաղում էինք նաև այսպիսի խաղ. պետք էր հարցեր տալով իմանալ մտքում պահած մարդու անունը։ Տրված հարցերին կարելի էր պատասխանել միայն «այո» կամ «ոչ»։ Եթե գուշակողը տալիս էր ոչ բնորոշ հարց, որին կարելի էր պատասխանել և «այո», և «ոչ», ապա այդպիսի պատասխանը կողմնորոշվելու հնարավորություն չէր տալիս։ Հարկավոր էր ընտրել մտքում պահած անձնավորության բնորոշ, հատկանշական գծերը։ Դրա համար հարցերը տրվում էին այսպես.

— Տղամա՞րդ է։

— Ոչ (ուրեմն կին է)։

— Այգո՞ւմ։

— Այո։

Այնուհետև երեխաները հարցնում էին.

— Կապույտ շորերո՞վ։

— Գոտու տակ ծաղի՞կ է դնում։

Իսկ մեծերը տալիս էին նաև այսպիսի հարցեր.

— Համարձա՞կ է։

— Խիզա՞խ է։

Հաճախ հարցերին տալիս էին նաև ծաղրական բնույթ, օրինակ.

— Այսօր կամուրջից ջո՞ւրն է ընկել։

— Նախնադարյան մա՞րդն է։ (Անեչկան այդպես էր ինձ կոչում այն պատճառով, որ ես լճափ էի գնացել եղեգնյա ինքնաշեն լաստով ու առագաստով)։

Վոլոդյան այս խաղերի մեջ բոլորին գերազանցում էր, նույնիսկ մեծահասակներին։ Նա բառահանելուկները կամ ոտնավորները գուշակում էր հենց առաջին բառերից, իսկ մի քանի խաղերում տալիս էր խորամանկ հարցեր և առաջ բերում ընդհանուր քրքիջ։

Մի անգամ, երբ գուշակելու հերթը հասավ Վոլոդյային, մտքում պահեցինք մորաքրոջս աղախիններից մեկի անունը, որը որսորդ էր և տաս հատ տնային բադ էր խփել (տնային բադերին կրակոցները չեն վախեցնում)։

Վոլոդյան շատ ուշ գուշակելով ասաց.

— Արդյո՞ք գուշակող անձնավորությունը չի կարծում, որ վայրի բադերը թռչում են միայն իններորդ կրակոցից հետո։

Բոլոր խաղացողների բարձր քրքիջը վկայում էր, որ Վոլոդյան շատ դիպուկ ասաց։

Որպեսզի Վոլոդյան գուշակելիս դժվարանա, մենք սկսեցինք մարդկանց փոխարեն մտքում պահել նաև անշունչ առարկաների անուններ. կոճղի մեջ ցցված կացին, հողի մեջ խրված ակիշ, պատի մոտ դրված թակարդ և նման բաներ։

Շատ հետաքրքիր էր հետևյալ խաղը. մեզանից մեկն ու մեկը մի որևէ գրքից կարդում էր պատահական նախադասությունը, իսկ գուշակողը պետք է ասեր հեղինակի և ստեղծագործության անունը։

Սկզբում վերցնում էինք միայն Կռիլովի առակները, իսկ ավելի ուշ՝ նաև գրականության մյուս կլասիկների ստեղծագործությունները։ Խաղում էինք նաև բառախաղ, որը շատ տարածված էր։ Ընտրում էինք այնպիսի բառեր, որ մասերի բաժանելիս յուրաքանչյուր մասն արտահայտեր որևէ իմաստ. օրինակ, ծառուղի (ծառ և ուղի)։

(Շարունակելի)

# ԳԵՏԱԿԸ

Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Անտառի միջով, ճամբարի դիմաց,
Մի ծիր գետակ է անա իջնում ցած,
Այնպես անուշ է ջուրը կարկաչում,
Կարծես կարոտով իր գիրկն է կանչում...
Ու մենք ճամբարից, կեսօրվա շոգին
Միշտ հյուր ենք գնում աշխույժ գետակին,

Ու լողանում ենք, լողանում այնքա՜ն,
Ջրից անկշտում բադերի նման...
Իսկ երբ շեփորն է ճամբարից ճչում,
Թողած գետակի ջուրը պաղպաջուն,
Զվարթ երգերով, շարքերով կայտառ,
Ջրից ուժ առած դառնում ենք ճամբար։

# ՄԻՆԱՍԸ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Այնպես լավ եմ հիշում այդ օրը, որ կարծես քիչ առաջ էր։ Բայց այդ օրից անցել է արդեն 17—18 տարի։ Իմ ընկերները և ես էլ, իհարկե, մեծացել ենք։ Ամեն մեկը կյանքում իր ասպարեզն է ընտրել... Շատ, շատ բան է փոխվել այդ օրից...*

*Յոթերորդ դասարանում հաճախ էր պատահում, երբ դասընկերներով մի տեղ հավաքված էինք լինում, խոսք էր բացվում, թե ով ինչ է դառնալու։*

*Վերջին քննությունը տալուց հետո, մի օր այդպես մեր ընկերներից մեկի՝ Արտոյենց այգում հավաքված խոսում էինք։*

*Տաք վիճաբանության պահին, մեկ էլ Հրաչիկը կանգնեց, թե՝*

*— Տղե՛րք, այսպես չի լինի, եկեք հերթով խոսենք։ Բոլորդ միասին բղավում եք, ոչինչ չի հասկացվում. ես մեկ-մեկ կհարցնեմ, իսկ դուք պատասխանեցեք։ Ըհը՛, ես իմը կասեմ ու կըպրծնեմ։ Ես պիտի ուսումս շարունակեմ։ Երբ տասներորդը վերջացնեմ, կգնամ ինժեներ-շինարար կդառնամ։ Դե հիմի, օրինակ՝ քեզանից սկսենք, Խաչի՛կ, դո՞ւ...*

*— Ես էլ կշարունակեմ, իսկ հետո կգնամ գյուղատնտեսական։*

*— Իսկ դու, Լևոն...*

*Այսպես նա հերթով սկսեց հարց ու փորձ անել։*

*Եվ ահա մեր տղաներից մեկը, անունը Մինաս, հանկարծ, բոլորիս համար անսպասելի ասաց.*

*— Ես, տղե՛րք, պարաշյուտիստ եմ դառնալու։*

*— Պարաշյուտի՞ստ...*

*— Հի՛-հի՛-հի՛...*

*— Հո՛-հո՛-հո՛...*

*Մեզանից ոմանք մինչև անգամ սկսեցին ծիծաղից թավալվել կանաչների վրա։*

*— Դե որ ծիծաղում եք, ես վեր կկենամ ու կգնամ, ա՛յ,— ասաց նա։*

*Մենք լռեցինք։*

*— Ախր Մինա՛ս ջան,— ասաց Խաչիկը,— քեզանից ի՞նչ պարաշյուտիստ։ Դու ֆիզկուլտուրայից լավ չես, համ էլ նիհար ես, փոքրիկ. դու որ ինքնաթիռից թռչես, հենց այդպես էլ կմնաս օդում կախված...*

*— Ճիշտ է ասում. դու թեթև ես, կմնաս օդում կախված,— մեջ մտան մի քանիսը։*

*Այսպես երկար կշարունակեինք, բայց տեսանք, որ Մինասը նեղանում է, ձեռք քաշեցինք, անցանք հաջորդին։*

*Մենք ու Մինասենք հարևաններ էինք։ Ամառային արձակուրդներին ես ու նա հաճախ էինք միմյանց այցելում։ Այդ ամառ մենք ավելի շատ մտերմացանք, որովհետև ես մյուսների նման չէի ծիծաղում նրա վրա, ծաղրական տոնով «պարաշյուտիստ» չէի անվանում և Մինասն ինձ վստահում էր ապագայի իր երազանքները։*

*Մինասը մի գրքույկ էր ձեռք բերել պարաշյուտային սպորտի մասին։ Կարդում էր, ուսումնասիրում. այդ ամառ սկսեց եռանդով զբաղվել մարմնամարզությամբ, լողալ սովորել։*

*— Գիտես,— ասում էր նա,— այս գրքում գրված է, թե սպորտի որ ձևերն են հատկապես օգտակար պարաշյուտիստի համար ու հիմա դրա համաձայն պարապում եմ։*

*Ես հետևում էի նրան և կամաց-կամաց նրա համառությունն սկսում էր զարմացնել ինձ։ Մինասն այնպես կանոնավոր էր պարապում ու հանդըստանում, որ ես շուտով սկսեցի հավատալ, որ նա անպայման պարաշյուտիստ կդառնա։ Մի օր էլ նա ասաց.*

*— Ես արդեն տասնչորս մետր բարձրությունից թռչում եմ։*

*— Պարաշյուտո՞վ...*

*— Չէ՛, ինչ պարաշյուտ, ջրի մեջ...*

*Մի քանի օր հետո էլ, թե՝*

*— Արի գնանք լողարան։*

*Ես համաձայնեցի։*

*Հուլիսի վերջերն էր, շոգ օր էր։ Մտածեցի՝ լավ է, կգնամ, կլողանամ, կզովանամ։*

*Այն հարգանքը, որով լողարանում մշտական հաճախորդ տղաներն ընդունեցին Մինասին, ինձ շատ զարմացրեց։ Քիչ հետո իմ զարմանքը բոլորովին ուրիշ բան շարժեց։*

*Մինասը, մեր Մինասը, որ մինչ այդ դպրոցում հայտնի էր որպես ֆիզկուլտուրայից թույլ, հետ մնացող, աշտարակից ցատկեց և այն էլ ի՜նչ... աշտարակի ամենավերին հարթակից։ Երբ նա փնչացնելով ու սև մազերից ջուրը թամելով ավազանից դուրս եկավ, ես արդեն մի տեսակ ուրիշ աչքերով էի նայում նրան, և նոր միայն նկատեցի, որ այդ երկու ամսվա ընթացքում նա լցվել է, ամրապնդվել, բոլորովին փոխվել։*

*Շուտով մեր հարևանությունը վերջացավ։ Մի-*

նաանք նոր բնակարան տեղափոխվեցին, որը քաղաքի հակառակ կողմն էր: Աշնանը նա սկսեց ուրիշ դպրոց հաճախել: Բայց հաջորդ տարվա առաջին քառորդը նոր էր սկսվել, երբ ղպաներից մեկը մի օր հայտարարեց.

— Գիտեք ի՞նչ, Մինասը Մոսկվայի մոտ մի քաղաքում պարտիզանների կուրսեր է ընդունվել...



Անցան տարիներ: 1942 թվականն էր: Ես որպես շարքային զինվոր ծառայում էի մի ստորաբաժանման մեջ, որը թշնամու գերազանց ուժերի ճնշման տակ հարկադրված նահանջում էր: Մեր կապը մյուս զորամասերի հետ կտրվել էր: Ռադիոկայան ունեինք, սակայն ռադիոտը շարքից դուրս էր եկել: Մենք մի կապավոր էինք ուղարկել, որ անցնելով ռազմաճակատի գիծը պետք է գիվիզիայի շտաբից մեզ համար ռադիստ խնդրեր:

Մեր հետագա գործողությունների համար ռադիստ ունենալը կենսական հարց էր: Կապավորը շտաբին պետք է հայտներ, թե մոտավորապես որտեղ և մինչև երբ կսպասենք ռադիստին:

Մեր ուղիները երեք կողմից կտրելով, թշնամին ուզում էր թևլադրել, թե որ ճանապարհով գնանք. սակայն ո՛չ տանկերի համառ գրոհները, ո՛չ ականանետային կատաղի կրակները չէին կարողանում մեր մարտիկների կամքն ընկճել: Մի քանի օրվա մարտերի ընթացքում մեր զորամասը շարքից դուրս էր հանել թշնամու տասնմեկ տանկ, մի քանի հարյուր զինվոր ու սպա:

Հակառակ ֆաշիստների բոլոր ջանքերին, նշված օրը մենք հասանք պայմանավորված վայրը, որտեղ սպասելու էինք ռադիստին: Դրանից այն կողմ անտառն էր, որի մեջ խորանալով մենք կարող էինք ազատվել թշնամու հետապնդումից: Այնուհետև մենք ուզում էինք թափանցել ֆաշիստների թիկունքը և պարտիզանական տակտիկա վարելով, կործանիչ հարվածներ տալ նրանց:

Եվ ահա, անտառի եզրին մենք խրամատավորվեցինք, վճռելով դիմադրել, մինչև որ ռադիստը կհասներ:

Այդ օրը, վաղ առավոտից, թշնամին անընդհատ գրոհում էր: Մինչև երեկո մեր խրամատների վրա պայթում էին թշնամու ականներն ու ռումբերը: Հենց որ կրակը մի փոքր հանդարտվում էր, լսվում էին կատաղի ողողակներ և ֆաշիստական հետևակը գրոհում էր մեզ վրա: Կեսօրից անց էր, երբ ֆաշիստական վեց ինքնաթիռ խոյացան դեպի մեր գիրքերը: Ռումբերի համատարած պայթյուններից թվում էր, թե ամբողջ երկիրը քարուքանդ է լինում: Մեջքներիս վրա պառկած, հրացաններս ինքնաթիռներին ուղղած, մենք կրակում էինք:

Հանկարծ ինքնաթիռներից մեկը պոչից թանձր ծուխ բաց թողեց ու սկսեց պտույտներ գործելով վայր իջնել մեր գիրքերից մի քանի հարյուր մետր հեռու: Իսկ մյուս ինքնաթիռները ետ դարձան ու թռան դեպի արևմուտք:



—Ես, տղե՛ր, պարտիզան եմ դառնալու:

Մեր կորուստներն էլ զգալի էին: Շարքից դուրս էին եկել երկու գնդացիր, մի քանի հակատանկային հրացան: Կային սպանվածներ ու վիրավորներ: Ճիշտ է, ֆաշիստների կորուստներն ավելի մեծ էին, բայց մեր ամեն մի մարտիկը անգնահատելի էր մեզ համար:

Մի մարտից հետո մեր հրամանատարը մեզ հավաքելով, ասաց.

— Ընկերնե՛ր, մենք առաջադրանք ունենք հակառակորդի թիկունքում պարտիզանական շարժում ծավալելու: Բայց այստեղ մնալը վտանգի տակ է դնում մեզանից ամեն մեկի կյանքը: Ես թողնում եմ ձեր վճռին՝ ինչպե՞ս անել, շարունակել դիմադրելն այս բնագծում, մինչև որ մեր խնդրած ռադիստը հասնի, թե՞ նահանջել անտառի խորքը և դուրս պրծնել ֆաշիստների աքցանից...

Մի պահ լռություն տիրեց, ապա առաջինը խոսեց մարտիկ Ամիրնովը:

— Մնալ ու դիմադրել. սպասել, ընկե՛ր հրամանատար...

— Սպասե՛լ... — միաձայն կրկնեցին մյուսները: Բայց նրանց ձայները խլացան հրետանային

համազարկերից։ Թշնամին նոր գրոհի էր պատրաստվում։

Հրամանատարը անխոս շնորհակալություն հայտնեց մարտիկներին։ Ապա նրա կարգադրությամբ մենք նորից գրավեցինք մեր տեղերը։

...Հերթական գրոհը ետ էր մղված։

Իրիկնադեմ էր։ Արևն արդեն սուզվում էր մեր դեմ փռված անծայրածիր տափաստանի հետևը։ Մեկ էլ կատաղի մի քամի բարձրացավ։ Փոշու և չորացած տերևների հսկայական ամպերը մի բոպեում ծածկեցին մայր մտնող արևի դեմքը։ Քամու ոռնոցն այնքան ուժեղ էր, որ թշնամու հեռաձիգ հրետանու որոտները հազիվ լսելի դարձան. իսկ երբ փոշին դադարեց, երկնքում պտույտներ գործող մի ինքնաթիռի սիլուետ նշմարեցինք։

— Օ՛դ, ի զե՛ն,— հնչեց օդային տագնապի հրամանը։

Անմիջապես հրացանները վերցրինք ու պատրաստվեցինք կրակ բանալ օդից հարձակվող թշնամու դեմ։ Հանկարծ մեր հրամանատարը, որ հեռադիտակով օդն էր դիտում, բացականչեց.

— Թողնե՛ք, ինքնաթիռը սովետական է...

Նա հավանորեն նշմարել էր ինքնաթիռի թևերի աստղերը։



...Մենք պինդ-պինդ գրկախառնվել էինք:

Նույն պահին որոտացին թշնամու զենիթային հրանոթներն ու գնդացիրները։ Մենք սրտատրոփ տեսնում էինք, թե ինչպես ինքնաթիռի մոտ գոյանում էին ծխի փոքրիկ ամպիկներ, որոնք ցույց էին տալիս, թե որտեղ են պայթում թշնամու արկերը։

Ինքնաթիռը պտույտներ գործելով մի քիչ էլ իջավ ու բոլորս պարզ տեսանք, թե ինչպես նրանից անջատվեց մի փոքրիկ սև կետ։ Սև կետը գնալով մեծանում էր։ Կասկած չէր կարող լինել, դա ռադիստն էր։ Բայց պարաշյուտն ինչո՞ւ չի բացում... փչացե՞լ է ինչ է... Մեզանից ամեն մեկի գլխով հազար ու մի միտք անցավ։ Ահա պարզ երևում են մարդու գլուխը, ոտքերը. ուր որ է, նա գետնին կզարկվի...

Եվ հանկարծ մեր գլխավերևում բացվեց պարաշյուտի սնկաձև գմբեթը։ Մի քանի վայրկյան անց մենք շրջապատել էինք ռադիստին ու գրկախառնվում էինք նրա հետ։ Երբ ես մոտեցա նրան՝ ապշեցի... ծանոթ, այնքան լավ ծանոթ աչքեր, ականջակալներով գլխարկի տակից դուրս պրծած սև գանգուրների մի խոպոպիկ...

— Մինա՛ս,— ինքս էլ ինձ չհավատալով բացականչեցի ես...

Քիչ հետո մենք պինդ-պինդ գրկախառնվել էինք։ Ես գրկել էի Մինասին կրկնակի ջերմությամբ՝ որպես մանկության ընկերոջը, և որպես հերոսի, որ կյանքը վտանգի ենթարկելով եկել էր մեզ մոտ։

Նույն օրը մեր զորամասը նահանջեց անտառի խորքը, իսկ մի ամիս չանցած մեր պարտիզանական ջոկատն արդեն ահ ու սարսափ էր տարածում ֆաշիստների թիկունքում։

Այդ օրից մոտ մի շաբաթ էր անցել, երբ ես Մինասին հարցրի.

— Լսիր, ինչո՞ւ քո պարաշյուտն այդքան ուշ բացվեց։

— Ինչո՞ւ. եթե շուտ բաց անեի, թշնամին դանդաղ վայրէջքի պահին ինձ վրա դիպուկ կրակելու հնարավորություն կունենար։ Բացի այդ, վերևից նայելով անտառի ալեկոծվող մակերեսին՝ գլխի ընկանք, որ ցածում ուժեղ քամի է։ Սավառնորդն առաջարկեց ցատկումը հետաձգել։ Չէ՞ որ քամին կարող էր ինձ ձեր գծերից շատ հեռու քշել։ Սակայն ես գիտեի, որ ձեզ համար չափազանց դժվար էր այստեղ երկար դիմադրել։ Որոշեցի ցատկել, բայց պարաշյուտն ուշ բանալ։

Մինասը պարաշյուտը բացել էր գետնից 100—120 մետր բարձրության վրա։ Նա այլևս ոչինչ չասաց, իսկ ես այն ժամանակ չգիտեի, որ դա պարաշյուտն ուշ բանալու ռեկորդային ցուցանիշ է։

# ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆ

Ա. ՊՈՂՈՍՅԱՆ

Նկ. Ռ. ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

Բացվել է նորից երկինքը հստակ,
Փռվել է չորս կողմ դաշտը լայնարձակ։
Հեռու սարերից հովերն են վազում,
Փարվում արտերին և օրոր ասում։
Դաշտում է, արդեն պապիկը զվարթ,
Առվակի մոտով քայլում է հանդարտ.
Առվակն է մռռում, երգում մեղմորեն,
Շուրջը՝ ծովացած եգիպտացորեն։
Լսվում է վերից բահերի զնգոց,
Հետն էլ ջրերի ուրախ զլգլոց։
Հրճվում է պապիկն ու ծափ է տալիս.
Պիոներական ջոկատն է գալիս։
Պապիկը գոհ է. թոռներն անհամար
Եկել են իրեն օգնելու համար։
Նա ամեն մեկին տալիս է մի գործ
Ու հետո դիմում Գարիկին անփորձ.
— Նայիր Հասմիկին, իմ փոքրի՛կ ընկեր,
Մոլախոտը, ա՛յ, էսպես կպոկեն...
Հողն ամենուրեք երգ է ավետում,
Հասած ցողուններով արտն է վետվետում։
Լսվում է հովից այնքա՜ն հմայուն՝
Կովերի բառաչ, հորթերի մայուն։
Եվ ցողուններն ինչպես արձագանք՝
Կարծես ասում են, թե՝ հիմա կգանք։



# ԳԱՆՁԸ

Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Աստրախանը պաշարված էր։ Թշնամին ձգտում էր գրավել Կասպից ծովի ափին, Վոլգա գետի գետաբերանին գտնվող այդ կարևոր նավահանգիստը։ Նրա նպատակն էր զրկել ռևոլյուցիայի կենտրոնը՝ Մոսկվան Բաքվի նավթից, գրավել Աստրախանում գտնվող նավատորմը և մայրաքաղաքին հարվածել թևից։

Ծանր օրեր էին։ Ժամ առ ժամ սպառնում էր շրջապատված Աստրախանի անկումը։ Աստրախանը թշնամուն չտալ,— որոշեց Կոմունիստական պարտիան։ Լենինի առաջարկով այնտեղ ուղարկվեցին Սերգեյ Կիրովը և Գեորգ Աթարբեկյանը՝ քաղաքի պաշտպանությունը կազմակերպելու համար։

Սկսվեցին երկարատև ու համառ մարտերը։ Մերոնք Կիրովի ու Աթարբեկյանի գլխավորությամբ քաղաքը մաքրեցին խռովություն պատրաստող թշնամիներից և պատրաստվեցին հարձակման։ Սակայն քաղաքը սոված էր։ Սննդամթերք բերել հնարավոր չէր։ Ճանապարհները գրավել էր թշնամին։ Միայն Պարսկաստանում կարելի էր ապրանք գնել և փոխադրել ծովով։ Իսկ Պարսկաստանը մթերքները ոսկով էր վաճառում։ Քաղաքում Ռևկոմի ձեռքում ոսկի չկար։

— Գևո՛րգի Ալեքսանդրովի՛չ, — մի անգամ ասաց Աստրախանի ռևկոմի նախագահ Կիրովը Աթարբեկյանին, — պետք է մի հնար գտնել երեխաներին ու վիրավոր բանակայիններին սովից փրկելու համար։



— Ճիշտ եք ասում, բայց...

— Ճիշտ եք ասում, բայց անհրաժեշտ է ոսկի ձեռք բերել, որ մթերքներ գնենք, — մտածկոտ պատասխանեց Աթարբեկյանը, շփելով իր փարթամ մորուքը։

— Ոսկի՞, ո՞րտեղից, — ասաց Կիրովը. — Ցարիցինը* գրավված է, Մոսկվայի հետ ոչ մի կապ չունենք։

Աթարբեկյանի աչքերում անսովոր մի փայլ երևաց. հայացքը դարձավ խիստ։ Նա կուրծքը բռնեց և հազաց։ Երբ չոր հազն անցավ, նա դարձավ Կիրովին.

— Տեղեկություն ունեմ, Սերգե՛յ Միրոնովիչ, որ քաղաքի հայտնի վաճառական Ավրամը չի կարողացել փախչել՝ քաղաքը Կարմիր Բանակի կողմից հանկարծակի գրավվելու հետևանքով։ Նա շատ, մոտ մեկ միլիոն ռուբլու չափ ոսկի ունի թաքցրած։

— Բռնագրավել և օգտագործել երեխաներին ու հիվանդներին փրկելու համար. Ռևկոմը թույլատրում է, — ասաց Կիրովը և տեղից վեր կացավ։

— Կարծի. իմ օգնական Մաքսիմը... — բայց հազը նորից խեղդեց բառերը։

Աթարբեկյանը ցարական բանտերի մութ ու խոնավ խցերում թոքերի հիվանդություն էր ստացել և քաղաքացիական կռիվների տարիներին շարունակ տանջվում էր այդ ցավից։ Հետո էլ անքուն գիշերներն էին հյուծել նրան։ «Լավ կլինի գնաս բուժվես, հանգստանաս» — ասում էին նրան ընկերները։ Բայց Աթարբեկյանը պատասխանում էր՝ «Քանի չեն ոչնչացվել ռևոլյուցիայի թշնամիները, Աթարբեկյանը չի հանգստանա»։

Երբ հազը հանդարտվեց, Աթարբեկյանը խոր շունչ քաշեց ու շարունակեց.

— Ոսկին, Սերգե՛յ Միրոնովիչ, անպատճառ ձեռք կբերվի. արդեն խուզարկության եմ ուղարկել օգնականիս՝ Մաքսիմին, — վերջացրեց նա։

Կեսօրին Մաքսիմը եկավ Աթարբեկյանի մոտ և զեկուցեց.

— Խուզարկությունը ոչ մի արդյունք չտվեց։ Գանձը շատ խորն է թաքցրել։

— Ի՞նչ է ասում վաճառականը, — հարցրեց Աթարբեկյանը։

— Ասում է՝ չունեմ. ահա տունը ձեր առաջ, նայեցեք, քրքրեցեք։ Սուտ բաներ են ասել իմ թշնամիները։

— Հետո՞։

— Համառում է. բանտարկությունն էլ չօգնեց։

— Լավ, — ասաց Աթարբեկյանը։

Առավոտյան Աթարբեկյանը վաճառականին ազատեց բանտից և մի խումբ կարմիրբանակայինների հետ գնաց նրա տուն։ Այստեղ փորձված չեկիստը շատ ուշադիր զննեց առաջին հարկի բոլոր կասկածելի անկյունները և բարձրացավ երկրորդ հարկում գտնվող սյունազարդ դահլիճը։ Աթարբեկյանը վաճառականին կանգնեցրեց դահլիճի մեջտեղն ու դիմեց նրան.

— Ասացեք պահված գանձի տեղը. հավատացնում եմ, որ բոլորը չենք վերցնի։ Փոխարինաբար տվեք մեզ եղածի կեսը։ Երաշխավորում եմ՝ շրջապատումից դուրս գալուն պես, վերադարձնել վերցրածը։ Դա շատ անհրաժեշտ է պաշարված քաղաքում սովից մեռնող երեխաներին ու վիրավոր բանակայիններին փրկելու համար։

Ավրամը փայլեցնելով մանրիկ, վախեցած աչքերը երեսը խաչ հանեց ու պատասխանեց.

— Աստված վկա՝ չունեմ. մի տասնոց էլ չունեմ։

Աթարբեկյանի աչքերը վառվեցին, մորուքը շփեց և ասաց խիստ.

— Ասացեք ճշմարտությունը. խաբեք՝ կգտնենք հենց այստեղ, — դիտավորյալ վախեցրեց նա վաճառականին։

* Ներկա Ստալինգրադը

— Թող սև ագռավները կտցեն աչքերս, բորենիները քրքրեն լեշս, սերնդից-սերունդ անիծված լինենք, թե սուտ եմ ասում,— ծնկի գալով ասաց Ավրամը:

Աթարբեկյանը բարկությամբ նայեց համառ ծերուկին, որը շարունակում էր բղբղացնել ու խաչ հանել երեսը: «Ի՞նչ անել»— մտածեց և հայացքն Ավրամից չկտրելով մի քայլ արավ դեպի նա: Վաճառականը վախից կուչ եկավ: Աթարբեկյանը զսպեց զայրույթը և հանգիստ ասաց.

— Թող ութ հարյուր հազարը մնա ձեզ. փոխարինաբար մեզ տվեք գոնե երկու հարյուրը, կրկնում եմ, հիվանդներին ու որբ երեխաներին փրկելու համար:

Ծերունին Աթարբեկյանի հանգիստ հարցադրումից սիրտ առավ ու բղբղացրեց.

— Թող ասված հենց հիմա հոգիս առնի, թե սուտ եմ ասում:

Աթարբեկյանը համոզվեց, որ վաճառականը կմեռնի, բայց պահված գանձի տեղը չի ասի: «Ի՞նչ անել», նորից հարց տվեց նա ինքն իրեն ու որսաց դահլիճի գեղեցիկ, մարմարի նման ներկած սյուներին հառած վաճառականի հայացքը:

— Մի հրացանիդ շամփուրը տո՛ւր,— հանկարծ դիմեց Աթարբեկյանը հետը եկած մարտիկներից մեկին: Մարտիկը կատարեց նրա կամքը: Վաճառականը հանկարծ կծկըվեց, բարձրացրեց ձեռքերը, ճղճղաց.

— Խնայեցե՜ք, չե՛մ դիմանա, մեղք մի՛ արեք...

Աթարբեկյանն ուշադրություն չդարձրեց Ավրամի խոսքերին: Նա չմոտեցավ նրան ու չխփեց: Հակառակ վաճառականի սպասածին, նա դանդաղ մոտեցավ սյուներից մեկին, շամփուրով հարվածեց ու նայեց Ավրամին: Վաճառականն այդ պահին լայն բացեց աչքերը. ահավոր գունատությունը պատեց նրա դեմքը, այտերն ասես փոս ընկան. իսկ քիթը դուրս ցցվեց:

Աթարբեկյանը գլխի ընկավ: Նա խփեց երկրորդ սյունին: Ձայնը նույնն էր, փայտային: «Մի՞թե սխալվեցի» հարց տվեց նա ինքն իրեն ու հարվածեց երրորդին, չորրորդին: Ոչ մի կասկածելի բան չգտավ: Նա կանգ առավ մի պահ, մտածկոտ հայացքով նորից նայեց վաճառականին ու խփեց հինգերորդ սյունին: Աթարբեկյանի դեմքին ուրախության ժպիտ փայլեց... Հինգերորդ սյունից եկող ձայնը խուլ էր:

— Քանդե՛լ այս սյունը,— հրամայեց նա մարտիկներին:

Կարմիրբանակայինները հանեցին կողքերից կախված փոքրիկ բահերը և հետները բերած լինգերով ու բահերով անմիջապես քանդեցին հինգերորդ սյունը... Դեղին ոսկին թափվեց հատակին ու շեղջ դարձավ:

— Չե՛մ տա, չե՛մ տա,— գոռաց Ավրամը, ցատկեց տեղից և խելակորույս, չռված աչքերը գանձին հառած, վազեց դեպի դահլիճի անկյունը, բացեց պատի վրա գամված գաղտնի սեյֆը, հանեց այնտեղից ատրճանակը և նշան բռնեց Աթարբեկյանի կրծքին... Բայց կրակել նրան չհաջողվեց:



Դեղին ոսկին թափվեց հատակին...

Հետևի կողմից մոտեցած Մաքսիմը նույն պահին ոլորեց վաճառականի ձեռքը և ատրճանակը խլեց:

Աթարբեկյանը ծակող հայացքով նայեց Ավրամին, շփեց մորուքը և դարձավ օգնականին.

— Տարեք դրան. էլ չեն մեռնի երեխաները...

## ԿՈՄԲԱՅՆԱՎԱՐԸ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Խաղաղ փռված ծով դաշտերին
Իջավ ամառ բերքառատ,
Հովի թևին օրորվեցին
Ոսկե արտերն ալեզարդ:
Կոմբայնավար Կարոն անցած
Առատ հունձը նիշելով,
Կոմբայն նստեց ու դաշտ գնաց
Սարի կանաչ փեշերով:
Նոր կոմբայնը բարի մոր պես
Լիք հասկերը գրկելով,
Արտի միջով առաջ շարժվեց
Հոնդալով, երգելով:
Եվ սկսեց հունձը առատ.
Կարոն՝ ղեկը իր ձեռքին,
Ձայնակցում է ուրախ-զվարթ
Իր կոմբայնի համերգին.

— Ոսկի հագան սար ու ձոր,
Երգիր, երգենք բարձրաձայն,
Մեզ է նայում արտը նոր,
Հնձիր, հնձենք իմ կոմբայն:
Արևն անհոգ ծիծաղում
Վերևից հուր է մաղում,
Մեր լայնարձակ դաշտերի
Բերքը ծով է այս տարի:
Ցողունն աճել, ծառի պես
Բոյ է քաշել՝ բարձրացել,
Ծանրությունից, նայիր՝ տե՛ս,
Հասկն ինչպես է կռացել:
Հնձիր, առատ հունձ անենք,
Բերքը դաշտից տուն տանենք,
Պակասության սով լինի,
Առատության ծով լինի:

Եվ կոմբայնը ձայն է տալիս,
Հունձ է անում արտերում,
Ավտոներն էլ գնում-գալիս
Ոսկի ցորենն են կրում:

## ԱՅԳԵՊԱՆ ՄՈՍԻՆ

(Հեքիաթ)

Մ. ԿՈՐՅՈՒՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

*Ասում են հին ժամանակ մեր աշխարհում Մոսի անունով մի այգեպան է ապրել: Այգեպան Մոսին մի այնպիսի կախարդական զորություն է ունեցել, որ ինչ քար ու ապառաժի ձեռք է տվել, վարդ ու մանուշակի է փոխել, ինչ անապատ ոտք է դրել, ծաղկած այգի է դարձրել:*

*Այգեպանի համբավը հասնում է Թագավորին: Թագավորը կանչում է նրան.*

*— Գնա,— ասում է,— թող քոնը լինի իմ երկրի մեծ անապատը, թե այնտեղ կյանք ծաղկեցրիր, անապատը քեզ կնվիրեմ, քո անունով կկոչեմ...*

*Գնում է այգեպան Մոսին ու ժողովրդին իր շուրջն հավաքած, մտնում անապատ...*

*Տարիները հավքերի երամների պես թևին տալով գալիս անցնում են: Մի օր էլ լուր են տալիս Թագավորին թե.*

*— Չես ասի, քո մեծ անապատը ծաղկել, այգի է դարձել...*

*Թագավորն իր աչքով տեսնել է ուզում ծաղկած անապատն ու նրա երջանիկ բնակիչներին: Վերցնում է իր շքախումբն ու գնում: Տեղ է հասնում այն ժամանակ, երբ վերջալույսը ոսկու մեջ էր թաթախել երկինքն ու երկիրը, իսկ ժողովուրդը այգեպանի հետ աշխատում էր ծաղկած անապատում: Ինչ որ լսել էր Թագավորը անապատի մասին, հազարապատիկ քիչ էր իր տեսածից: Մարդկային լեզվով անհնարին է նկարագրել ծաղկած անապատի գեղեցկությունն ու թովչանքը...*

*Թագավորի մարդիկ հիանում են այգեպանի կախարդական զորության վրա, բայց Թագավորի ահից սիրտ չեն անում գովել նրան. միայն շշնջում են միմյանց ականջին.*

*— Այս այգիներն ո՞ւր, պալատականն ուր...*

*— Այս մրգերն ո՞ւր, պալատական մրգերն ուր...*

*Այգեպան Մոսին մարդիկ համոզված են լինում, որ Թագավորը կկանչի այգեպանին, նրա անունով կկոչի ու նրան կնվիրի այդ ծաղկած անապատը, ինչպես խոստացել էր: Սակայն Թագավորը ասում է այգեպանին.*

*— Դու աններելի հանցանք ես գործել, այգեպան:*

*— Ո՞րն է իմ հանցանքը, Թագավորն ապրած կենա,— ճակատի քրտինքը սրբելով ու զարմացած*

ժողովրդին նայելով հարցնում է այգեպան Մոսին:

— Քեզ ո՞վ իրավունք տվեց այս անապատով մրցել իմ պալատական այգիների հետ: Քո անապատի համբավը հովի թևով աշխարհից աշխարհ է անցել ու նսեմացրել իմ փառքը: Այդ արարքիդ համար քեզ վտարում եմ իմ երկրից: Միայն իրավունք եմ տալիս քեզ վերցնել այգուց այն, ինչ որ ամենաթանկագինն է քեզ համար...

Բոլորն հուզված սպասում են: Այգեպան Մոսին առաջ է գալիս ու ցույց տալով իր հասարակ բահը ասում է.

— Թագավորն ապրած կենա, ահա ինձ համար ամենաթանկագին բանն աշխարհում. սրա մեջ է իմ հաղթանակի գաղտնիքը, իմ կախարդական ուժը:

Այս ասելով այգեպան Մոսին քաշվում է մի կողմ, սպասելով, թե ժողովուրդն ինչ կասի: Ժողովրդին թվում է, թե այգեպանն ուզում է հեռանալ այգուց, ու գոչում է:

— Կա՛ց, այգեպա՛ն Մոսի, դու մեզ հետ մշակել ես այս անապատը, ամեն մի թիզ հողը ոռոգել ես քո արյունով ու քրտինքով: Մենք ազնիվ աշխատանքով անապատը այգի ենք դարձրել, ասել է հողը մեզ պիտի պատկանի...

Ժողովրդի այս ահեղ ձայնից սթափված թագավորը նայում է այգեպանին, բայց նրա փոխարեն իր աչքի առջև ծառանում է դարավոր մի կաղնի, արմատները ամուր մխած մայր հողի սրտում: Թագավորը փակում է իր աչքերը տեսիլքը փարատելու համար, սակայն այս անգամ նրա աչքին մի ուրիշ պատկեր է երևում: Նա տեսնում է, որ իր դեմ ուղղված բահերը փայլատակում էին արևի շողերի տակ:

— Հեռացի՛ր, թագավո՛ր, եթե չես ուզում կյանքից ու կայքից զրկվել,— նորից հնչում է ժողովրդի ահեղ ձայնը:

Տեսնելով այս, պալատականները խորհուրդ են տալիս թագավորին գլուխ չդնել ժողովրդի



— Քեզ ո՞վ իրավունք տվեց...

հետ: Թագավորը գլխիկոր հեռանում է իր նախկին անապատից:

Ժողովուրդը չի բավարարվում թագավորին իր հողից վտարելով: Կանչում է աշխարհի ամենաճարտար նկարչին: Այգու դռան վրա քաշել է տալիս այգեպան Մոսիի նկարը՝ բահը ձեռքին ու նկարի տակ գրել է տալիս այս տողերը:

«Թող գովքն անի աշխարհն-արար
Աշխատանքի արդար մարդու,
Հողի մարդուն ստեղծարար՝
Երջանկություն, խաղաղություն»:

## ԴԱՇՏՈՒՄ

Կանգնած եմ ահա
Ես արձակ դաշտում,
Իմ առջև անափ
Արտերն են ծփում:

Սահում է հովը,
Հասկերն են նազում,
Արտերի ծովն է
Մեղմիկ ալիքվում:

Ու ոսկեծածան
Արտերի ծովում,
Նավակի նման
Կոմբայնն է լողում:

Ցորենն է թափվում
Ջրվեժի նման,
Ու երգն է նրա
Հնչում քաղցրաձայն:

Արևն էլ ամռան
Ճամփան մոռացած
Նայում է, ժպտում,
Աչքով լիացած:

ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ

(Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղի միջնակարգ դպրոց)

# ԵՂԱՆԱԿ ԿԱՆԽԱԳՈՒՇԱԿՈՂՆԵՐԸ

Ռ. ԱՐԱՅԱՆ

Ֆոտո՝ Ս. ՏԵՐ-ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

Երեկոյան դեմ քամին դադարեց։ Գեղամա լեռների կատարներին կուտակված ամպերը կախվեցին հարթավայրի ու լճի վրա և քիչ հետո թանձր մառախուղը ծածկեց և՛ քաղաքը, և՛ լիճը։ Եվ այդ խավարի մեջ, հեռվից դեռ շարունակում էր լսվել Սևանա լճի ու ափերի վրա փշրվող ալիքների մռնչյունը։ Իսկ գիշերն սկսեց տեղալ մանրակաթիլ, հորդ անձրևը։ Այդ օրը, 1954 թվականի դեկտեմբերի մեկին, օդերևութաբանական կայանի հերթապահ, իններորդ դասարանի աշակերտուհի Վիլետա Սարգսյանը մատյանում գրանցեց.

«Օրը ամպամած էր և անձրևային։ Անձրևը տեղաց գիշերվա ժամը մեկից մինչև ժամը տասներեքը։ Տեղումների քանակը՝ 40 մմ։ Օդի հարաբերական խոնավությունը ժամը 13-ին՝ 85 տոկոս»։

Խոնավ եղանակները շարունակվում էին։ Այդ օրերին դպրոցի դահուկավորներն օդերևութաբանական կայանի հերթապահների հոգին հանում էին.

— Է՜յ, գուշակողնե՛ր,— ծաղրում էին դահուկավորները,— ի՞նչ եք մտածում վերջապես, ե՞րբ եք ձյուն բերելու։



Պարապմունք կայանում

— Սպասիր, պատասխանում էին օդերևութաբանները,— ձյունն այնքան էլ շուտ չի գա։

Հետևյալ օրը տղաները նորից գլխիկոր ու հուսահատ գալիս էին օդերևութաբանական կայան։

— Հը՞, ինչպե՞ս է, առհեցի՞ք դահուկներով,— ծիծաղում էին աղջիկները,— մրցումները դեռ չե՞ք սկսել։

Բայց երևում էր, որ տղաներն արդեն տրամադրություն չունեին կատակելու։

Վերջապես դեկտեմբերի քանից հետո եղանակը ցրտեց. ավելացավ օդի հարաբերական խոնավությունը։ Միշա Մարգարյանը և Համլիկ Հակոբյանը, որոնք խոնավաչափի մոտ էին, հանկարծ նայեցին իրար.

— Չէի նկատել,— ասաց Միշան,— ալարն ինքնուրին է մոտենում։

— Այո,— պատասխանեց Համլիկը,— հավանաբար ձյուն կգա։

— Միանգամայն ճիշտ է,— նրանց ձայնակցեց Վիլետան, որը մոտեցել էր ջերմաչափին,— եղանակը ցրտել է…

Եվ իսկապես. հաջորդ օրը, դեկտեմբերի քառնչորսին, վաղ լուսաբացից սկսեց տեղալ մանրափաթիլ ձյունը։ Առաջին ձյուն, ձմռան առաջին բերկրանք։ Ինչպիսի՜ արտակարգ ուրախության մեջ էին դահուկավորները։

Դասերից հետո նրանք հավաքվեցին խորհրդակցության։ Նրանք որոշեցին հաջորդ օրը դուրս գալ արշավի և հասնել մինչև Այծեմնասար։ Սակայն Միշա Մարգարյանը, որը նույնպես մոլի դահուկավոր էր, սառեցրեց ընկերների եռանդը։

— Վաղը ոչ մի տեղ էլ չեք գնա։

— Ինչո՞ւ, ո՞վ կխանգարի մեզ,— զարմացան տղաները։

— Ձյունը հո չի՞ կտրվելու, վախեցած ասաց ինչ-որ մեկը։

— Ոչ, չի կտրվի, բայց չի կարելի…

— Ախր ինչո՞ւ, է՞…

— Բուք է սպասվում,— համոզված տոնով ասաց Միշան։

— Այ թե հնարեցի՜ր,— բարկացած ասաց տղաներից մեկը,— սպանեցիր դու էլ քո գուշակություններով։

— Չե՞ք հավատում՝ կտեսնեք, կարծես սպառնալով ասաց Միշան ու հեռացավ։

Բայց որպեսզի տղաներն իսկապես վաղն արշավի դուրս չգան, նա հայտնեց ֆիզկուլտուրայի դասատուին և նոր միայն գնաց տուն։

Եվ իսկապես, հաջորդ օրը, հենց դասերից հետո, կարծես վերջին զանգին էր սպասում, սկսվեց կատաղի բուքը։



Մի անգամ, աշխարհագրության դասին, երբ դասատու Սուրեն Մուրադխանյանը պատմում էր քամիների ուժը չափող գործիքների մասին, վեր-

*քին շարքում նստած ինչ-որ մի աշակերտ գրեթե բարձրաձայն ասաց կողքին նստած ընկերոջը.*

*— Ա՜յ, եթե մենք էլ ունենայինք այդ գործիքներից...*

*Մուրադխանյանը լսեց: Եվ այդ ամբողջ օրը նա չկարողացավ հանգստանալ: Իսկ ինչո՞ւ օդերևութաբանական խմբակ-կայան չստեղծել: Հաջորդ օրն այդ մասին նա խոսեց դպրոցի դիրեկտորի, ընկեր-ուսուցիչների հետ: Շուտով խմբակը կազմակերպվեց և ստեղծվեց կայանը: Դպրոցի բակի աջ մասում աշակերտները հողամաս ընտրեցին, ցանկապատեցին այն և սկսեցին գործիքներ պատրաստել: Մուրադխանյանի ղեկավարությամբ Միշա Մարգարյանը պատրաստեց էկկեր (անկյունաչափ), Միշա Բաղեյանը՝ ֆլյուգեր (քամաչափ), Համլիկ Հակոբյանը՝ ձյունաչափ ձող և այլն: Շուտով կայանում դրվեցին նաև ավտոմատ ջերմաչափ (թերմոգրաֆ), անձրևաչափ, արեգակնային-հասարակածային ժամացույց՝ հողի ջերմաստիճանը չափելու համար և բազմաթիվ այլ գործիքներ:*

*Կազմակերպելով օդերևութաբանական կայան և խմբակ, դպրոցի դիրեկցիան նպատակ ունի աշակերտներին տալ պոլիտեխնիկ կրթություն, ինքնուրույն, գործնական աշխատանքի ունակություններ:*

*Արդեն մեկ տարուց ավելի է, ինչ գործում է օդերևութաբանական կայանը: Նրանց կատարած գրանցումները ցույց են տալիս, որ աշակերտները հիանալի կերպով ուսումնասիրում են Սևանի կլիման, կարողանում են կանխագուշակել սպասվելիք եղանակը և համարձակ եզրակացություններ անել: Հենց միայն եղանակի գրաֆիկի միջոցով, որը նույնպես կազմում են երեխաները, կարելի է իմանալ, թե արկտիկայում սկսված ցիկլոնն ի՞նչ չափով կազդի Սևանի եղանակի վրա, կամ Իրանական բարձրավանդակում փչող խորշակը եղանակի ինչ փոփոխություններ կառաջացնի Սևանում:*

*Սևանի Խ. Աբովյանի անվան դպրոցի պատանի օդերևութաբանները այլ նպատակներ էլ ունեն: Ահա ավարտվել է ուսումնական տարին: Սևանի ավազանի վրա իր գունեղ գորգն է փռել ամառը: Ծաղկավետ սարերում արածում են շրջանի կոլտնտեսությունների անասունները, դաշտերում հասունանում է առատ բերքը, Սևանի ափերին փռված այգիներում՝ միրգը, իսկ ձկնորսները վաղ լուսաբացից դուրս են գալիս լիճ: Ո՞վ գիտե. հանկարծ տեղատարափ անձրև չի՞ սկսվի, կամ հանկարծահաս մրրիկը չի՞ վնասի ձկնորսներին:*

*Ահա հենց այս մասին էին խոսում աշակերտները մի օր, Սևանի ափին լողանալիս:*

*— Սարերում կարկուտ է սպասվում,— ասաց Միշա Մարգարյանը,— զգուշացնենք հովիվներին, որ հոտը շատ հեռու չտանեն:*

*— Անհրաժեշտ է,— նրան արձագանքեց Ռիմա Թոռչյանը.— թե չէ կարկուտը հոտին վնաս կտա:*

*— Ահա թե մենք ինչով կարող ենք օգնել կոլտնտեսություններին,— երազուն հայացքը հառելով դեպի երկինք և ավելի հարմար պառկելով տաք ավազի վրա ասաց Միշա Բաղեյանը,— մենք կդառնանք նրանց լավ օգնականները:*

ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՃԱՄԲԱՐՆԵՐՈՒՄ

# ՄԵՐ ԽՄԲԱԿՆԵՐԸ

Ծաղկաձորի Տեղարդմիության պիոներական ճամբարում աշխույժ եռ ու զեռ է տիրում: Հուլիսի երկուսից ճամբարում գործում են պատանի տեխնիկների, իսկ փոքրահասակների համար «Հմուտ ձեռքեր» խմբակներ, որոնց մեջ ընդգրկված են 60 երեխա: Խմբակի պարապմունքների համար հատկացված է լուսավոր, մաքուր, լավ կահավորված աշխատասենյակ: Այնտեղ կան բոլոր անհրաժեշտ նյութերն ու գործիքները պիոներների ստեղծագործական աշխատանքի համար: Ցածր դասարաններում սովորող երեխաները զբաղվում են թղթի և ստվարաթղթի աշխատանքներով:

Չորրորդ ջոկատի պիոներ Մանուկյան Սեդան թղթից շինել է տարբեր տեսակի զամբյուղներ, փոքրիկ սայլակ՝ իր ձիերով: Նույն ջոկատից Մաղաքյան Բետին՝ թռչող արջուկ և թղթից բաժակ է պատրաստել, երրորդ ջոկատի պիոներ Հակոբյան Հակոբն՝ ակնոցներ, իսկ Էլբակյան Էմմանիկը՝ մի գեղեցիկ ծաղիկ: Երկրորդ ջոկատից Վասիլյան Զոհրաբը գունավոր թղթերից հյուսել է մի սիրուն գորգ:

Վատ չեն աշխատում նաև պատանի տեխնիկների խմբակի պիոներները: Նրանք գլխավորապես պատրաստում են ֆիզիկայի ինքնաշեն գործիքներ, ուսումնասիրում ֆիզիկայի օրենքները: Թաշչյան Ռոզան, Վարդանյան Զեմֆիրան և Հովհաննիսյան

Դյուլենյան պատրաստում են էլեկտրամագնիս, որի օգնությամբ պետք է ստուգեն մագնիսի՝ մետաղները ձգելու հատկությունը։ Շիխկյան Ռուդիկը պատրաստել է էլեկտրամագնիսական կոճ, իսկ Համբարձումյան Ռուդիկը՝ մանրադիտակ։ Այդ մանրադիտակի մեջ ոսպնյակի դեր է կատարում ջրի կաթիլը։ Նրա միջոցով հնարավոր է մարմինը մեծացնել մի քանի տասնյակ անգամ։

Մի քանի պիոներ սկսել են սարքել փոքրիկ գործող հիդրոկայան։ Արդեն պատրաստ է նրա տուրբինը։ Հիդրոկայանը լուսավորելու է ամբողջ ճամբարը։

Խմբակի պիոներները օգնում են ճամբարին բոլոր տեսակի տեխնիկական հարցերում։ Նրանք հեռախոսային կապ են ստեղծել ճամբարի խորհրդի և հերթապահների միջև։ Երեխաների պատրաստած լավագույն սարքերը ցուցադրվում են պիոներական սենյակում։ Շուտով կկազմակերպվի աշխատանքների ստուգատես, որը է՛լ ավելի է ոգևորում նրանց։

Հ. ՍԱՀԱԿՅԱՆ

*(Խմբակի ղեկավար. Տեղարդմիության ճամբար)*

# ՔԱՂԱՔԱՅԻՆ ՃԱՄԲԱՐՈՒՄ

*Բակի երեխաներին անչափ ուրախացրեց, որ ուսուցչուհի Ջեմմա Սափրիչյանը համաձայնվեց քաղաքային ճամբարի պետ լինել։*

*— Ընկեր Ջեմման ամեն բան գիտի. ամառն ուրախ և հետաքրքիր կանցկացնենք,— ասում էին նրանք միմյանց։*

*Լուրն ուրախացրեց նաև ծնողներին։ «Պետք է օգնել երեխաներին», որոշեցին նրանք ու գործի անցան։*

*Ծնողական խորհրդի նախագահ ընկեր Միսակյանն ու բակի տղաները պատրաստեցին աստղը և ամրացրին կայմին։ Սարքեցին նաև դրոշը։ Հետո ճամբարի խորհրդի համար ֆաներայից ու տախտակներից սենյակ կառուցեցին, աղջիկներն էլ կահավորեցին։*

*— Այս էլ ձեր «շտաբը» — ասաց ընկեր Միսակը։*

*Եվ փոքրիկ սենյակը դարձավ երեխաների սիրած անկյունը։*

*Շուտով երևացին աթոռներ, փոքրիկ սեղաններ, իսկ նրանց վրա՝ մանկական գրքեր, «Պիոներ կանչ», «Պիոներսկայա պրավդա» թերթերը և «Պիոներ» ամսագիրը։*

*Իններորդ դասարանի աշակերտ Էդուարդ Հարությունյանը նշանակվեց ավագ ջոկատավար։ Բակի երեխաներից ընտրվեցին օղակավարներ, ջոկատի խորհուրդ և խմբագրական կոլեգիա։*

*Մի քանի օր հետո լույս տեսավ «Բարեկամություն» պատի թերթի առաջին համարը, աշխատեցին ձեռագործի, երգի-պարի, ասմունքի խմբակները։ Բոլորն էլ լծվեցին խելացի ու օգտավետ աշխատանքի։*

*Եթե հիմա դուք այցելեք Երևանի Ալավերդյանի անվան փողոցի № 4 բակի քաղաքային ճամբարը, խորհրդի սենյակի պատին փակցրած աշխատանքի պլանում կկարդաք. «Էքսկուրսիա դեպի Կենդանաբանական այգին, Սևան, ժամացույցի գործարան, Հոկտեմբերյան, Էջմիածին»։ Այդ ծրագրում կտեսնեք, որ նախատեսված են նաև զրույցներ, հանդիպումներ հարևան ճամբարների երեխաների հետ... Այդ զրույցներից և էքսկուրսիաներից շատերն արդեն կատարված են։*

*Երեխաներին առանձնապես մեծ հաճույք պատճառեց գեղեցիկ Սևանը։ Նրանք երկար շրջեցին լճափին, կոլեկցիաների և հերբարիումների համար վայրի ծաղիկներ, ջրային բույսեր հավաքեցին. իսկ ինչքա՜ն խեցի, խխունջ, հարթ ու ողորկ քարեր գտան։ Ընկեր Ջեմմայի օգնությամբ բնասերներն էլ տարբեր տեսակի միջատները դասավորեցին տուփերի ու արկղերի մեջ։ «Հարազատ դպրոցին» արկղների վրա գրեցին պիոներներն ու փակեցին բնագիտական անկյունում։*

*Երեկո է։ Զով քամին թռչում է քաղաքի վրայով, ճոճում ծառերի կատարներն ու զովացնում ամենքին։ Սովետական Միության Պետական Հիմնի հնչյունների տակ հանդարտ օրորվելով իջնում է դրոշն ու խաղաղ քուն բերում ճամբարականներին։*

Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

# ՕՂԱԿԱՎԱՐ ԼՈՒՍՅԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԸ



Երկրորդ օրն էր, ինչ Լիզա Վարդանյանը դպրոց չէր գալիս։ Դա շատ անհանգստացրեց Լուսյային։ Հաջորդ օրը, օղակի մի քանի անդամներ՝ Էմման, Մարգոն, Ասյան, Ցոլակը գնացին Լիզայենց տուն։ Նա հիվանդ էր։ Բժիշկը խորհուրդ էր տվել հանգիստ պառկել, չկարդալ։

— Դու ոչ մի դեպքում ետ չպետք է մնաս, մենք քեզ կօգնենք,— ասաց Լուսյան։

Այնուհետև օղակի անդամներից մերթ մեկը, մերթ մյուսը գնում էին Լիզայենց տուն, բացատրում անցած նյութը, կարդում հանձնարարված դասերը։ Բոլորից շատ գնում էր օղակավարը։ Նա Լիզային պատմում էր իր կարդացած նոր գրքերի, դրուժինայում եղած նորությունների մասին։ Առողջանալուց հետո Լիզան այլևս չդժվարացավ, բացակայությունները նրա վրա չէին ազդել։

— Ջերմոցների համար արկղներ է հարկավոր պատրաստել,— մի անգամ ասաց ջոկատի խորհրդի նախագահ Էմմա Մալխասյանը։

— Հանձնարարեք մեր օղակին,— ասաց Լուսյան։

Դասերից հետո դպրոցի արհեստանոցում հավաքվել էին երկրորդ օղակի պիոներները։ Մելքոնյան առաջին անգամն էր փայտ սղոցում։ Սղոցը չէր հնազանդվում նրան։

— Սա էլ ուղիղ չկտրվեց,— ասաց նա և մի՛ կողմ դրեց արկղի եզրի համար ծուռ կտրված փայտը։

Այդ րանը չվրիպեց օղակավարի աչքից։ Նա մի փայտ վերցնելով մոտեցավ Մելքոնյանին։

— Հուսահատվել պետք չէ. առա, մի անգամ էլ փորձիր։

Նա նոր էր սկսել սղոցը շարժել, երբ Լուսյան նրան կանգնեցրեց։

— Այդպես, ինչպես, ուղիղ չես կարող կտրել, պետք է փայտը ամուր սեղմել հենարանին, որպեսզի չշարժվի։

Մյուս դազգահի վրա աշխատում էր Ցոլակը։ Նա հղկում էր կտրված փայտերը, իսկ Բավականը, Գևորգը և Քնարիկը վարժ շարժումներով մեխում էին պատրաստի փայտերը՝ մեկը-մյուսին։

Մյուս օրը բնագիտական կաբինետի համար անհրաժեշտ ջերմոցի արկղներն արդեն պատրաստ էին։

Լուսյայի օղակը դպրոցամերձ հողամասում անեցրել է բազմատեսակ ծաղիկներ՝ վարդակակաչ, ասողածաղիկ, փորձամարեն աճել է նաև վարդածաղկավորների ընտանիքին պատկանող տերեփուկը։ Նրանք այս տարի առաջին անգամն է, որ եգիպտացորեն են աճեցնում։ Փորձամարեն աճած բույսերն առատ բերք են խոստանում։ Երկրորդ օղակի բոլոր պիոներները հաջողությամբ հանձնեցին նաև քննությունները և փոխադրվեցին վեցերորդ դասարան։ Այժմ նրանցից շատերն իրենց հանգիստն անցկացնում են բակային ճամբարներում։

Լուսյա Գրիգորյանը ճամբարում էլ միշտ ակտիվ, առաջավոր կազմակերպիչ է։

Հ. ԱՄԲԱՐԴԱՐՅԱՆ

(Լենինականի Խ. Աբովյանի անվան դպրոց)

# ՑԱՆՑԻ ՄՈՏ

Ռ. ԱՐԱՄՅԱՆ

Ֆոտո՝ Մ. ԲՈՉԱՐՅԱՆԻ

Գարնանային արևոտ օր է։ 26 կոմունարների այգու վոլեյբոլի խաղադաշտում արտակարգ աշխուժություն է տիրում։ Մերթ բարձրանում, մերթ իջնում է գնդակը։ Իրինան խաղում է առաջին գծում։ Գնդակը ուղղակի կախվում է ցանցի վրա։ Ուր որ է «Հակառակորդի» խաղացողը կխփի։ Ո՛չ, նա չի խփում, գնդակը ուղղում է դեպի դաշտի դատարկ մասը։ Իրինան օդի մեջ փոխում է մարմնի դիրքը, ետ է նետում իրեն ու համարյա թե գետնից գնդակը բարձրացնում է վեր։ Գնդակը փրկված է։ «Հակառակորդի» խաղացողները այն փոխանցում են միմյանց, փորձում են խաբել և քանի դեռ Իրինան տեղից չի բարձրացել, նրանք գնդակը նորից ուղղում են այդ կողմը։ Իրինան տեղից ցատկում է վեր։ Նրա ոտքը ցավում է, բայց մի՞թե դրա մասին մտածելու ժամանակ կա. նա չի էլ զգում, թե ինչպես է նետվում առաջ և ուժեղ հարվածով գնդակը ուղղում է «Հակառակորդի» խաղադաշտի աջ անկյունը։

— Տասնհինգ-տասներեք,— հաշվում է դատավորը։

Պուշկինի անվան դպրոցի աղջիկների թիմը կորցնում է առավելությունը։ Առաջին խաղակեսը նրանք ավարտել էին յոթ-տասնհինգ հաշվով. 55-րդ դպրոցի վոլեյբոլիստները տարել էին առաջին խաղակեսը, իսկ երկրորդում հաշիվը արդեն հավասարվել էր։ Մարզիչները մեկ րոպե ընդմիջում են անում։ Շտապ-շտապ, համարյա թե շշուկով խոսելով, նրանք բացատրում են հակառակորդի սխալները։ 55-րդ դպրոցի ֆիզկուլտուրայի դասատու Ելենա Գամինիկյանը ասում է.

— Աղջիկնե՛ր, «Հակառակորդը» շփոթված է. խաղում եք նրանց վեցերորդ համարի վրա. որքան կարելի է բարձր ուղարկեք գնդակները։

Դատավորը ազդարարում է խաղի վերսկսելու մասին։ Խաղացողները գրավում են իրենց տեղերը։ Վճռական պահ է։ Եթե Պուշկինի անվան դպրոցի վոլեյբոլիստներին հաջողվի տանել երկրորդ խաղաշրջանը, ապա նրանք կխաղան երրորդը, որը և կվճռի խաղի բախտը։

55-րդ դպրոցի աղջիկները աշխատում են գնդակը երեք փոխանցմամբ ուղարկել «Հակառակորդի» խաղադաշտը։ Մերթ բարձրանում, մերթ իջնում է գնդակը...

Գևորգյան Սվետլանան ընդունելով գնդակը փոխանցում է Մկրտչյան Ելենային, նա էլ Իրի-



նալին է տալիս։ Վերջինս բռնում է գնդակը և ուժեղ հարվածով ուղարկում է հակառակորդի խաղադաշտը։ Գնդակը չի վերադառնում։

— Տասնչորս-տասնհինգ,— հաշվում է դատավորը։

Պուշկինի անվան դպրոցի մարզիչը նորից մի րոպե ընդմիջում է վերցնում։ Պարտության վտանգը ավելի շոշափելի է դառնում։

— Խաղացեք երեք փոխանցումով,— ասում է մարզիչը,— ոչ մի դեպքում մի հարվածով չանցկացնեք, փնտրեցեք բաց տեղերը։

Պուշկինի անվան դպրոցի աշակերտները. որոնք եկել են «ցավակցելու», ավելի են հուզվում, փորձում են օգնել իրենց խաղացողներին։

— Թամարա, խփի՛ր, խփի՛ր,— բղավում են այս ու այն կողմից։

Հանկարծ վեցերորդ խաղացողը ետ է մղում հարվածը և գնդակը դիպչելով ցանցին, ընկնում է սեփական խաղադաշտը։

— Տասնհինգ-տասնվեց,— ազդարարում է դատավոր Հրաչիկ Ալեքսանյանը։

55-րդ դպրոցի աշակերտուհիները ուրախությունից ճչում են. նրանց դպրոցը նորից հաղթանակ տարավ։ Դատավորի սուլիչը ազդարարում է եզրափակիչ խաղի ավարտը։ 55-րդ դպրոցի աշակերտները ծաղկեփնջեր են տալիս հաղթող ընկերներին։

Դատավորական սեղանի վրա դրված էր «Պիոներ» ամսագրի փոխանցիկ գավաթը։ Մի քանի տարի է արդեն, որ համառ պայքար է գնում այդ գավաթին տիրանալու համար։ 55-րդ դպրոցին 1952 թվականին առաջին անգամ վիճակվեց նվաճել այդ գավաթը։ Այժմ նրանք նորից շարժվում են դատավորական սեղանի առաջ՝ նվիրական գավաթն ստանալու համար։ Գլխավոր դատավորը գավաթը



Վճռական հարված

տալիս է թիմի կապիտան, իններորդ դասարանի աշակերտուհի Իրինա Մկրտչյանին։

Մրցումներն ավարտված են, բայց մի ուրիշ մրցություն է կանգնած նրանց առջև. մի ուրիշ գավաթ պետք է նվաճեն նրանք. դա ուսման առաջնության գավաթն է։

Ֆիզկուլտուրայի դասատու Ելենա Դամինիկյանը հրաժեշտ է տալիս իր վոլեյբոլիստներին։

— Ցանկանում եմ, որ դուք ուսման առաջնության գավաթը նույնպես նվաճեք,— ասում է նա,— առողջ մարմնի մեջ առողջ հոգի և առողջ միտք է ապրում։

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՄԱՐՇՐՈՒՏՈՎ

ԱՐ. ՕՀԱՆՅԱՆ

(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)




Երևանից գնացքով ուղևորվում ենք Լենինական։ Ճանապարհն անցնում է Արարատյան դաշտով։ Ձեր աչքերի առաջ է սլացիկ բարդիների և ձյունափայլ Արարատի սքանչելի բնապատկերը։

Շատ է փոխվել Արարատյան դաշտը։ Անցյալի կիսաանապատային տափաստանները ծածկվել են փարթամ այգեստաններով, կոլտնտեսային նոր գյուղերով, ասֆալտապատ խճուղիներով, գործարաններով։

Աննկատելիորեն անցնելով մի քանի ժամ տևող ճանապարհը, հասնում ենք Լենինական՝ Հայաստանի երկրորդ արդյունաբերական կենտրոնը։ Անցյալում դա մի փոքրիկ բնակավայր էր՝ Գյումրի անունով։ 1804 թվականին ռուսական զորքերը գրավեցին Գյումրին, իսկ 1837 թվականին նա վերանվանվեց Ալեքսանդրապոլ։ Մինչև սովետական կարգերի հաստատումը դա՝ մռայլ տներով, կեղտոտ ու ցեխոտ փողոցներով մի քաղաք էր։ Աչքի էր ընկնում իր հմուտ արհեստավորներով ու նոգերով գուսաններով։

1924 թվականին քաղաքը կոչվեց Լենինական։ Սկսվեց նրա բուռն աճը։ Կառուցվեցին հսկայական գործարաններ, բացվեցին լայն պողոտաներ, գցվեցին ծառաստաններ։ Այժմ

դում հիացմունքով կանգնեք՝ Կիրովի, Կալինինի, Շահումյանի, Պուշկինի փողոցներով, որտեղ բարձրանում են վարդագույն տուֆից կառուցված, բարձր շենքեր: Այժմ Լենինականն ունի մի քանի տասնյակ գործարաններ, որոնք տալիս են 180 տեսակի արտադրանք:

Դնում ենք տեսնելու արդյունաբերական ձեռնարկությունները և տեսարժան վայրերը՝ տեքստիլ կոմբինատի մանվածքային, գործվածքային, ներկման ֆաբրիկաները, տրիկոտաժի ֆաբրիկան, Մոլոտովի անվան մանարան ֆաբրիկան, մսի պահածոների կոմբինատը, հեծանիվի գործարանը, տոմետի և ապակու գործարանները, երկաթուղային դեպոն, բուսաբանական այգին, մայիսյան ապստամբության հերոսների մոնումենտը: Լենինականում մնում ենք երկու-երեք օր:

Այդտեղից գնացքով ճանապարհվում ենք դեպի Կիրովական: Գնացքն անցնում է Ջաջուռի թունելի միջով, որն ունի մոտ երկու կիլոմետր երկարություն: Թունելի ճակատին գրված է նրա կառուցման թվականը՝ 1898: Գնացքը փնչալով դուրս է գալիս թունելից և սլանում է Փամբակ գետի գեղատեսիլ ափերով: Բնապատկերը փոխվում է: Շիրակի անտառ դաշտից դուք անցնում եք Փամբակի ծաղկուն ձորը: Փամբակ գետի ձախ ափին դուք տեսնում եք Բազումի արոտավետ լեռները, իսկ աջ ափին՝ Փամբակի անտառոտ լեռնաշղթայի բազուկները:

Ահա երևում է Կիրովականը: Նա բազմել է լեռների փեշերին, շրջապատվել անտառներով: Այստեղ Փամբակ գետի մեջ են թափվում Տանձուտ ու Վանաձորի լեռնային գետակները:

Կիրովականում մնում ենք երկու օր: Զբոսնում ասֆալտապատ փողոցներում, տեսնում նորակառույց շենքերը: Գնում ենք դիտելու Ա. Մյասնիկյանի անվան հսկա գործարանը, մեքենաշինական գործարանը, մուշտակի, կաշի և տրիկոտաժի ֆաբրիկաները և մյուս տեսարժան վայրերը, «Դիմացի» բաղը, «Հայաստան» սանատորիան, անտառը և այլն:

Միայն սովետական իշխանության շնորհիվ է, որ անցյալի աղքատ, խղճուկ Ղարաքիլիսան դարձել է այսպիսի քաղաք. 1936 թվականին վերանվանվել է Կիրովական:

Կիրովականից, Լոռու չքնաղ ձորով, Դեբեդի ափերով գնացքը ձեզ տանում է Ալավերդի՝ Հայաստանի պղնձի և քիմիական արդյունաբերության նշանավոր կենտրոնը: Ալավերդին նայտնի է նաև իր ռևոլյուցիոն անցյալով: Սրանից հիսուն տարի առաջ Ստ. Շահումյանը և Ս. Սպանդարյանը ղեկավարել են Ալավերդու բանվորների ռևոլյուցիոն ելույթները: Այստեղ դիտում ենք պղնձաձուլական գործարանը, ուր ջրի պես հոսում է ձուլված պղնձի հրաշեկ զանգվածը: Դիտում ենք նաև պղնձարջասպի, ծծմբաթթվի և սուպերֆոսֆատի գործարանները:

Շարունակում ենք ճանապարհը: Դեբեդի չքնաղ ձորով մեկնում ենք դեպի Այրում կայարանը: Դեբեդի ձախ ափին, գնացքի վրա կախված են Վիրահայոց լեռների սեպաձև ժայռերը:

Այրումում դիտում ենք Այրումգէսի և Դեբեդի ջրհան կայանի շինարարությունը: Գնում ենք պտղաբուծական սովխոզը, ուր աճում են կիտրոնի, նարնջի, մանդարինի հազարավոր ծառեր, նշենի, դեղձենի, տանձենի, խնձորենի, խցանի ծառ. մոտ երկու հարյուր տեսակ ծառ:

Այրումը սննդի արդյունաբերության աչքի ընկնող կենտրոններից մեկն է: Այստեղի մրգի պահածոների գործարանը շուտով իր արտադրանքը կհասցնի տարեկան քսանհինգ միլիոն տուփի: Այստեղ կկառուցվի նաև շամպայն գինիների գործարան: Այրումում մնում ենք երկու օր:

Այստեղից մեկնում ենք Լամբալու՝ ձեր մարշրուտի ամենահետաքրքրական կետերից մեկը: Ահա բարձունքի կատարից երևում է Լամբալուի դաշտը, ձիթենու սովխոզը: Սովխոզում ձեզ հիացնում են արծաթակաճաչ տերևներով զուգված ձիթենիները, որոնք նման են մեր վաղեմի փշատենուն: Հարյուր քսանվեց հեկտար տարածության վրա շարված են մատղաշ ձիթենիները: Մոտիկ ապագայում դրանց տարածությունը կհասնի ութ հարյուր հեկտարի: Աղած, թթու դրած և կոնսերվացված վիճակում ձիթապտուղները շատ համեղ են: Ձիթապտուղը պարունակում է 75 տոկոս յուղ: Այդ յուղն օգտագործում են թե՛ որպես սննդանյութ, թե՛ որպես բուժիչ միջոց և թե՛ ձկան պահածոների արտադրության մեջ: Երկար է ապրում ձիթենին, մինչև հազար տարի:

Ձիթենիները կտան տարեկան տասնյակ միլիոն ռուբլիների հասնող եկամուտ, որովհետև մի ծառից ստացվում է մոտ վարսուն կիլոգրամ բերք: Մի ձիթենին մի կովի չափ յուղ է տալիս:

Լամբալուի սովխոզում դուք կտեսնեք նաև նռենի, թզենի, նշենի, կեռասենի, խնձորենի, տանձենի, խուրմայի, սերկևիլի և բազմապիսի այլ ծառեր: Մի խոսքով, կարող եք ասել, որ դուք այցելել եք մի հրաշալի բուսաբանական այգի: Ձիթենու սովխոզում մնում ենք երկու օր:

Լամբալուից ոտքով կամ ավտոմեքենաներով ուղևորվում ենք Նոյեմբերյանի շրջկենտրոնը, ուր դիտում ենք խաղողագինեգործական սովխոզը, նրանից ոչ հեռու գտնվող Ղալաչա գյուղի շամպայնի գինեգործարանը:

Այստեղից վերադառնում ենք ոտքով կամ ավտոմեքենայով: Նոյեմբերյանից, Սև Քար գյուղն անցնելով գալիս ենք Իջևան՝ Հայաստանի անտառային արդյունաբերության ամենախոշոր կենտրոնը: Իջևանն ընկած է Բազումի և Մուրղուզի լեռնաշղթաների անտառապատ բազուկների միջև, Աղստև գետի գեղատեսիլ հովտում: Իջևանն էլ շատ նշանավոր է մեր նորագույն պատմության մեջ: Այստեղից էր, որ Հայաստանի Ռևկոմը 1920 թվականի նոյեմբերի քսանիննին հեռագիր ուղարկեց մեծ Լենինին՝ Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու մասին:

Այստեղ դիտում ենք մի քանի կիլոմետր հեռու գտնվող Իջևանգէսը, որն ամբողջ շրջանի գյուղերին լույս է տվել

և էլեկտրիֆիկացիայի ներարկել կովերի կիթը, ոչխարների խուզումը, ալրաղացները:

Այնուհետև դիտում ենք փայտամշակման գործարանը, որ տալիս է ֆաներա, պարկետ և այլ շինանյութեր:

Իջևանից Աղստև գետի անտառապատ ափերով գալիս ենք Դիլիջան: Սա մի գեղատեսիլ կուրորտային քաղաք է, բազված սաղարթախիտ անտառների ու պարտեզների մեջ: Ամեն տարի հարյուրավոր հիվանդներ են գալիս Դիլիջան բուժվելու: Դիտում ենք քաղաքի մոտ գտնվող «Դիլիջան» հանքային ջրի գործարանը, տեսնում մյուս տեսարժան վայրերը և շարունակում ճանապարհը:

Դիլիջանից ուղևորվում ենք դեպի հռչակված Սևանա լճի ափերը: Խճուղին Փամբակի լեռնաշղթայի լանջերով բարձրանում է վեր ու վեր, կարծես վերջ չունի: Անցնում ենք կեռմանները, տեսնում սարերի մեջ բացված ժայռերից գահավիժող ջրվեժները: Վերջապես հասնում ենք Սևանի լեռնանցքը, որ գտնվում է 2122 մետր բարձրության վրա: Երևում է կապտաշինչ Սևանը, Սևան ավանը: Այստեղ դիտում ենք ստորերկրյա հիդրոկայանը՝ Սևանգէսը, ձկնագիտական կայանը, «Հայձուկ» տրեստի ձկնաբուծարանները: Նստելով նավ՝ շրջում ենք Սևանա լճի վրա, դիտում կղզին:

Սևանից վերադառնում ենք Երևան, ձեզ հետ բերելով վառ ու անմոռանալի տպավորություններ:



# Ամրոցները պատմում են

Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
(Պատմական գիտությունների թեկնածու)

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

*Հազարամյակներ առաջ, որպես կանոն, ամրոցները կառուցում էին այնպիսի բլուրների վրա, որոնք մեկ կամ մի քանի կողմից պաշտպանված էին լինում գետերով, անմատչելի ժայռերով, ձորերով կամ մեծ թեքություն ունեցող զառիվայրերով: Մնացած կողմերն ահռելի քարերից պարիսպ էին կառուցում և պաշտպանվում հակառակորդի հարձակումներից:*

*Հենց դրա համար էլ այդ ամրոցները ստացել էին կիկլոպյան անունը: Հայաստանում ամրոցաշինությունը սկիզբ է առել վեց-յոթ հազար տարի սրանից առաջ: Հազարամյակների խավարում անհետ կորել է կիկլոպյան կառուցումների մեծ մասը. մեզ հասել են դրանցից քչերը: Բայց դրանք էլ բավական են, որ գաղափար կազմենք վեց-յոթ հազար տարի առաջ Հայաստանում եղած նախաբնիկի շինարարական արվեստի, կուլտուրայի, կենցաղի որոշ կողմերի մասին:*

*Ամրոցները կառուցվում էին համայնքի և ազգամագերինների միացյալ ուժերով, շրջապատում թափված հրաբխային բազալտ քարից: Հաճախ ամրոցները շրջապատում էին մի քանի պարիսպներով: Պարիսպների պատերը լինում էին շատ հաստ, երբեմն չորս մետր լայնությամբ և հավանաբար վեց-յոթ մետր բարձրությամբ: Կիկլոպյան ամրոցներ կառուցողները չեն օգտագործել միացնող շաղախները: Նրանք պատերի արանքը լցրել են մանր քարեր: Պատերը ներսի և դրսի կողմերից բավականաչափ կոկ և քիչ խոռոչներով են շարված: Մեծ քարերը գլանների միջոցով գլորել և դրել են իրենց տեղերը:*

*Բոլոր ամրոցների շրջապատում և մոտերքում կառուցվում էին բնակատեղիներ: Վտանգի դեպքում ամրոցներում պաշտպանվում էին նաև նրա շրջապատի բնակիչները: Հայաստանում ամրոցները եղել են թե՛ որպես բնակություն, և թե՛ որպես հուսալի պաշտպանության վայրեր:*

*Սևանի ավազանն անհիշելի ժամանակներից բնակեցված է եղել: Այնտեղ կհանդիպեք կիկլոպյան և ուրարտական ամրոցների, քաղաքատեղիների, հնագույն ջրանցքների ավերակների:*

*Ուրարտական սեպագիր արձանագրություններում նշված է, որ Սևանի ավազանում կողք-կողքի ապրել են քսանվեց թագավորություն (հավանաբար ցեղեր): Այս բոլորից ամենաուժեղը*

եղել է Վելիքյուխի երկիրը, որի կենտրոնը գտնվել է Նոր Բայազետի տեղը։

Ուրարտական հզոր բանակները զինված էին իր ժամանակի բարձր տեխնիկայով, պատերազմների բազմամյա փորձ ունեին։ Նրանք բնիկ ցեղերի կողմից դաժան դիմադրության հանդիպեցին, երբ ութերորդ դարում մեր թվականությունից առաջ հարձակվեցին Լճաշենի ամրոցի վրա։

Նախաուրարտական շրջանի այս ամրոցը փակում է դեպի Նոր Բայազետ և ավազանի խորքը տանող ճանապարհը և ծառայում է որպես դարպաս։ Սա ավելի շուտ եղել է ամրոց-քաղաք և վճռական դեր կատարել թշնամիներից պաշտպանվելու գործում։ Այս ամրոց-քաղաքի պարսպի մնացորդները ձգվում են արևելքից արևմուտք հինգ հարյուր մետր երկարությամբ և մի ծայրով սեպի պես մխրճվում Սևանի ջրերի մեջ ու փակում մուտքը։ Բազմաթիվ արշավանքներից ու գրոհներից հետո միայն նվաճվել է Իշտիկունի անունը կրող այս ամրոցը։

Խորտակելով բնիկ ցեղերի դիմադրությունը, ուրարտացիները նվաճեցին ամբողջ ավազանը։

Վաղ միջնադարյան հայ քաղաքի ավերակներ կան Այրիվանքի շրջակայքում։ Ամրոցը կրել է Սպիտակ անունը։ Պարսպի պատերը, շենքերը կառուցված են կրաշաղախով։ Կարծիքներ կան, որ Սպիտակ ամրոցը կործանվել է Լենկ Թեմուրի արշավանքների ժամանակ։

Այստեղ գտնվում են նաև Աղատ քաղաքի ավերակները, որ գրեթե խառնված են Սպիտակ քաղաքին։ Աղատ քաղաքը կանգուն է եղել մինչև 1766 թվականը, բայց համարվել է ոչ թե քաղաք, այլ գյուղ։

Դեպի Նոր Բայազետ տանող ճանապարհի վրա այստեղ ու այնտեղ պահպանված են հին գյուղատեղերի և մատուռների ավերակներ։

Նոր Բայազետը հնում կոչվում էր Գավառ։ Այնտեղ ամենահինը Բերդադլուխ կոչվող ամրոցն է։ Դա կառուցել է ուրարտական թագավոր Սարդուրի որդի Ռուսան (730—714 թվ. մ. թ. ա.)։ Ամրոցի պարսպի մինչև այժմ պահպանված մնացորդները վկայում են, որ նրա կառուցման համար ծախսվել է մարդկային հսկայական ուժ։ Մուտքի մոտ գտնված է ուրարտական նույն Ռուսա թագավորի թողած սեպագիր արձանագրությունը, որը վերաբերում է ամրոցի շինարարությանը։

Նոր Բայազետի շրջանը հարուստ է հնագույն ժամանակների և միջին դարերի ամրոցներով ու բնակատեղիներով։ Բատիկյան գյուղի վերևում, բաց դաշտում, կանաչ խոտերի ու ծաղիկների մեջ, թաքնվել են միջնադարյան բնակատեղիների ավերակներ։ Քաղաքից հինգ կիլոմետր դեպի հարավ, Քյասաչուղ գյուղի մոտ, տեղանքի վրա իշխող մի բարձունքի տափարակ գագաթին, ավելի քան հինգ հազար տարի առաջ, կառուցվել է մի ամրոց։ Վերջինիս պարսպի մնացորդները պահպանվել են։ Ո՞վ իմանա, քանի, քանի անգամ է հարձակման ենթարկվել այս վեհանիստ ամրոցը և ինչպիսի զրկանքների ու հալածանքների են ենթարկվել սրա բնակիչները, կամ ինչպիսի համառությամբ դիմադրել հակառակորդին։ Բայց այս ամրոցները հազարամյակներ առաջ ավազանում ապրող բնիկների մասին շատ բան կարող են պատմել։

Գեղեցիկ դիրք ունի Աթամխան գյուղից ցած կառուցված նախաուրարտական Տուլխունի ամրոցը։ Արգիշտիի որդի Սարդուրը արյունահեղ կռիվներից հետո գրավեց Տուլխունին և տեղում, մի ժայռի վրա, թողեց սեպագիր արձանագրություն։ Այստեղ ասվում է, որ ինքը Վելիքյուխի (Նոր Բայազետի) երկրի հետ նվաճեց նաև Լուեխու որդուն՝ Թուլիխու երկրի թագավորին։ Սարդուրն ուրարտական բռնակալ թագավորներից մեկն էր։ Նա միայն մի տարվա արշավանքների ժամանակ Հայաստանից ստրկության է տարել քսաներկու հազար զինվոր և քսանվեց հազար յոթ հարյուր կին։

Սարդուրը մեծ վիշտ ու տառապանք պատճառեց մարդկանց, ավերեց երկիրը, հրկիզեց և խորտակեց շատ քաղաքներ ու պալատներ։ Դրանցից մեկն Աթամխանի ամրոցն է, որի երեք մետր բարձրություն ունեցող պարսպի մնացորդները մինչև այժմ պահպանվել են։

Աթամխանից չորս կիլոմետր դեպի հարավ-արևմուտք, անդնդախոր ձորերի միջից բարձրանում է մի ռոտ, որը միայն արևմտյան կողմից է մատչելի։ Մնացած կողմերից շրջապատված է խոր ձորերով և անմատչելի քարափներով։ Այստեղ գտնվում են մի մեծ ամրոց-քաղաքի ավերակները։ Ամրոցը երկու մուտք ունի՝ մեկը երեք մետր, մյուսը՝ մեկ մետր լայնությամբ։ Պարսպի պատերի լայնությունը տեղ-տեղ հասնում է երեք մետրի. շարված են անշաղախ։ Ամրոցը մի քանի անգամ վերակառուցվել է և իր գոյությունը պահպանել մինչև ուշ միջնադար։ Կանգուն մնացած պատերի բարձրությունը երբեմն հասնում է երեք մետրի։

Զորագյուղից մի քանի կիլոմետր դեպի հարավ-արևելք պահպանված է Սյունյաց իշխանների հիմնադրած Կոթ կամ Կոթաքար անունը կրող քա-

ղաքի ավերակները: Սևանի ավազանի ամենամեծ և պաշտպանության համար վճռական դեր խաղացած ամրոցներից մեկն էլ եղել է Ծովինարի կըրկնապարիսպ ամրոցը: Ամրոցի և լճի արանքում, մի բարձր ժայռի վրա, ուրարտական Սարդուրի որդի Ռուսա Թագավորը Թողել է քսանմեկ տողանոց արձանագրություն: Դրա մեջ նշվում է, որ ինքը նվաճել է քսանվեց մեծ ու փոքր Թագավորություններ, ավերել է երկրներ և կործանել քաղաքներ, ստրկության քշել մարդկանց ու Թագավորներին, տարել է մանր ու խոշոր եղջերավոր անասուններ:

Սևանի ավազանի վերջին ամրոցը՝ Ջաղալուինն է: Ջաղալուն նույնպես, ինչպես և Լճաշենը, կատարել է դարպասի դեր դեպի ավազանը բերող հարավ-արևելյան ճանապարհի վրա: Այստեղ անառիկ ամրոցի ութ մետր բարձրություն, երեք մետր լայնություն ունեցող պարսպի պատերին են բախվել ավազանի վրա հարձակվող ուրարտական բանակները և բոլոր օտարները:

Այսպիսով Սևանի ավազանը բնակության համար հարմար է եղել: Ավազանի հնագույն բնակիչն այստեղ ավելի հեշտ է ձեռք բերել ձկնեղեն և սնունդ, անտառներում առատ որս է արել, անտառից ազատ տարածություններն օգտագործել երկրագործական պահանջների, իսկ արոտավայրերն անասնապահությունը զարգացնելու համար:

Սևանա լիճը գոտևորող երբեմնի անտառապատ ու անհաղթահարելի բարձր լեռնաշղթաները ծառայել են որպես բնական անխորտակ պատնեշ օտար նվաճողների դեմ:

# Գ Ի Շ Ե Ր

*Վ. ՏԱՂՅԱՆ*

Վառ օրը անցավ
Գործերով անբավ,
Մեծ բերքով դարձանք մենք ճամբար.
Զով անտառով բավ
Ամպերին հասավ
Ջոկատը առույգ ու համառ:
Գիշեր է անուշ.
Հովիկն է քնքուշ
Իր երգը մեղմիկ շնկշնկում.
Քնել են մուշ-մուշ՝
Ծիծաղ, երգ ու հուշ.
Աստղերն են շողում երկնքում:
Քնիր դու խաղաղ,
Մեր ճամբար ուրախ,
Հարազատ անգամ գիշերով.
Առավոտյան վաղ՝
Նորից գործ ու խաղ,
Արշավ ու մրցում... խինդի ծով:
Գիշեր է անուշ.

*Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ*

Քնել է մուշ-մուշ
Ճամբարը այնպե՛ս հարազատ.



Ձեզ՝ բարի գիշեր,
Խիզախ ընկերներ,
Մինչև առավոտ երգառատ:

## ԱՏՈՄԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ

*Ա. ՍԵՄՅՈՆՈՎ*
(Ինժեներ)

*Մեր օրերում կաթսային սարքերի հնոցներում ամեն տարի վառվում են միլիոնավոր տոննա ածուխ, տորֆ, նավթ: Կաթսաներում գոյացող գոլորշին շարժման մեջ է դնում շոգետուրբինները: Տուրբինները պտտում են գեներատորները, որոնք և էլեկտրական հոսանք են արտադրում:*

*Ատոմային էներգիայի էլեկտրակայանը ջերմայինից տարբերվում է միայն նրանով, որ սովորական կաթսաների փոխարեն, ունի ատոմային կաթսա, կամ ինչպես նրան անվանում են՝ ատոմային ռեակտոր: Դա ատոմային էլեկտրակայանի սիրտն է: Այդ կաթսայի մեջ ստանում են ատոմային էներգիա, որը հետագայում փոխարկվում է էլեկտրականի:*

Ինչպե՞ս է կառուցված ատոմային ռեակտորը և ինչպես է նրա մեջ առաջանում ատոմային էներգիա։

Ռեակտորի հենց կենտրոնում գտնվում է գրաֆիտե մեծ խռամանը, որի մեջ կան վերից վար անցնող շատ անցքեր։ Անցքերում տեղավորված են ուրանի ձողերը։ Ուրանը հենց այն վառելանյութն է, ատոմային «վառելիքը», որից ստանում են ատոմային էներգիա։ Ուրանի ատոմների միջուկները հիանալի հատկություններ ունեն։ Նրանք մասերի են բաժանվում նրանց մեջ միջուկային մասնիկների՝ նեյտրոնների ընկնելու ընթացքում։ Հենց այդ ժամանակ էլ առաջանում է մեծ քանակությամբ էլեկտրական էներգիա։

Որպեսզի ավելի լավ հասկացվի, թե ինչպես են բաժանվում միջուկները, կարելի է անել, օրինակ, այսպիսի փորձ։ Ապակու թերթի վրա գցեք սնդիկի մի կաթիլ։ Եթե այդ կաթիլին ավելացվեն ուրիշ փոքրիկ կաթիլներ, նա կմեծանա։ Եվ վերջապես կաթիլն այնքան կմեծանա, որ եթե նրա վրա միայն մի փոքրիկ կաթիլ էլ ավելացվի, կբաժանվի երկու կաթիլի։ Մոտավորապես նույն բանն է տեղի ունենում ուրանի միջուկների հետ՝ նրանց մեջ նեյտրոններ ընկնելու դեպքում։ Բայց ո՞րտեղից են ատոմային ռեակտորում հայտնվում միլիարդավոր նեյտրոններ, որոնք անհրաժեշտ են ուրանի միջուկների բաժանման համար։ Նրանց աղբյուրը հանդիսանում են հենց իրենք՝ ուրանի միջուկները։ Ուրանի միջուկի ինքնաբերաբար բաժանման հաշվին երևացած նեյտրոնը, որը գտնվում է ուրանի միջուկի կողքին, ընկնում է միջուկի մեջ։ Նրանցից ամեն մեկը բաժանման դեպքում դուրս է նետում երկու-երեք նեյտրոն։ Եթե նեյտրոններն ընկնեն ուրանի ուրիշ միջուկների մեջ, ապա այդ վերջիններս նույնպես բաժանվում են և դուրս են նետում նեյտրոնները, որոնք առաջացնում են ուրանի հաջորդ միջուկների բաժանումը... Այսպես անընդհատ էլ բաժանվում են ուրանի միջուկները ռեակտորում։



էլեկտրակայանի շենքը:

— Իսկ ինչի՞ համար են ուրանի ձողերը տեղավորում գրաֆիտե խռամանում,— կհարցնեք դուք։

Պարզվում է, որքան փոքր է նեյտրոնների արագությունը, այնքան նրանք ավելի լավ են առաջացնում ուրանի միջուկների բաժանումը։ Իսկ գրաֆիտը դանդաղեցնում է նեյտրոնների շարժումը։ Երբ նեյտրոններն ընկնում են գրաֆիտի մեջ, նրանց հետ տեղի է ունենում ճիշտ այն բանը, ինչ փոքրիկ գնդակի հետ, որը գլորվում է քարերով կամ կոշտերով ծածկված փոքրիկ հարթության վրա։ Քարերին ու կոշտերին կպչելով, փոքրիկ գնդակը թռչում է մերթ մի կողմը, մերթ նա և անմիջապես կանգ է առնում։ Նեյտրոնները գրաֆիտի միջով անցնելու ժամանակ, շարունակ բախվում են ածխածնի ատոմների միջուկների հետ, որոնցից կազմված է գրաֆիտը։ Ահա թե ինչու նրանց արագությունը այնպես սրընթաց կերպով ընկնում է։

Եթե վերցնենք որոշակի չափերի գրաֆիտե մի խռաման և հավասար մեծությամբ ու անհրաժեշտ քանակությամբ ուրանի ձողեր, ապա ուրանի միջուկները ատոմային ռեակտորում կբաժանվեն անընդհատ և հետևապես առանց ընդհատումների կգոյանա ատոմային էներգիա։ Բայց դրա համար էլեկտրակայանի աշխատանքը պետք է կարգավորել։ Սովորական կայաններում կաթսայի հնոցի մեջ ավելացնում կամ պակասեցնում են վառելանյութը և օդը։ Ատոմային ռեակտորի աշխատանքը վարում են կադմիումից կամ բոր պարունակող պողպատից պատրաստված հատուկ ձողերի օգնությամբ։ Կադմիումը և բոր պարունակող պողպատը ագահությամբ կլանում են նեյտրոնները։ Եթե ռեակտորի մեջ տեղավորենք այդպիսի ձողեր, նրանք կկլանեն մեծ քանակությամբ նեյտրոններ։ Ուրանի միջուկների հետագա բաժանումը պետք է պահպանվի նեյտրոնների փոքրիկ քանակությամբ։ Այդ դեպքում ռեակտորում կսկսի առաջանալ ավելի քիչ քանակի ատոմային էներգիա։

Ատոմային էներգիան ռեակտորում առաջանում է ջերմության ձևով։ Ուրանի ձողերը հասնում են բարձր ջերմաստիճանի։ Նրանց երկայնքով, անցքերի միջով գրաֆիտե խռամանի մեջ բաց են թողնում սառեցնող հեղուկ։ Նա սառեցնում է ուրանի ձողերը, և այդ ժամանակ ինքն էլ տաքանում ու հասնում է բարձր ջերմաստիճանի։ Տաք հեղուկը իր ջերմությունը տալիս է ջրին։ Իսկ ջուրը տաքանալով, վեր է ածվում գոլորշու։ Գոլորշին էլ մտնում է տուրբինը և նրան շարժման մեջ դնում։ Այդպես է ստացվում էլեկտրական հոսանքը։

Ատոմային էլեկտրակայանն ունի շատ առավելություններ ջերմայինի համեմատությամբ։ Ահա նրանցից գլխավորը։ Ատոմային էլեկտրակայանում գործածվող ուրանի քանակությունը տասնյակ հազար անգամ ավելի քիչ է այն քարածխի քանակությունից, որը օգտագործվում է ջերմային էլեկտրակայանում։ Որպեսզի ատոմային էներգիայով աշխատող էլեկտրակայանը ամբողջ տարին հինգ հարյուր հազար կիլովատ կարողության հոսանք տա,— դա շատ մեծ էլեկտրակայան է,— անհրաժեշտ կլինի տեղափոխել ընդամենը մի վագոն ուրան։ Իսկ այդպիսի հզորության ջերմային էլեկտրակայանի համար հարկավոր կլինեն հիսուն հազար վագոն քարածուխ։ Ահա թե ինչու ատոմային էլեկտրակայանները կարելի է կառուցել վառելանյութի աղբյուրներից հեռու՝ անապատներում, տափաստաններում, Արկտիկայում, որտեղ երբեմն անհնար է լինում մեծ քանակությամբ ածուխ կամ նավթ փոխադրել։

1954 թվականի հունիսի քսանյոթին Սովետական Միությունում շարք մտավ ատոմային էներգիայով աշխատող աշխարհում առաջին էլեկտրակայանը, որն ունի հինգ հազար կիլովատ հզորություն։

# ԲԱԼԹԻԿ ԾՈՎԻ ԱՓԵՐԻՆ

Հուլիսի քսանմեկին լրացավ Մերձբալթյան երեք ռեսպուբլիկաներում սովետական կարգերի հաստատման տասնհինգ տարին:

Սովետական կարգերի հաստատումից առաջ այդ ռեսպուբլիկաներում տնօրինում էին օտարերկրյա իմպերիալիստները: Նրանց ձեռնտու չէր, որ լատվիացիները, լիտվացիներն ու էստոնացիներն ունենային իրենց արդյունաբերությունը: Դրա համար էլ այդ երկրներում խոշոր գործարաններ ու ֆաբրիկաներ չէին կառուցվում: Բուրժուական կարգերի ժամանակ Լատվիան, Լիտվան ու Էստոնիան գյուղատնտեսական երկրներ էին: Հողի մեծ մասը պատկանում էր կուլակներին ու կալվածատերերին, իսկ հազարավոր աղքատ գյուղացիներ կուլակային ստրկության մեջ էին: Հողը մշակվում էր ձեռքով կամ շատ պարզ մեքենաներով:

Մեծ էր քաղաքներում գործազուրկների թիվը: Աշխատավորների երեխաները հնարավորություն չունեին սովորելու, դրա համար էլ շատ անգրագետներ կային:

1940 թվականի ամռանը Լատվիայի, Լիտվայի ու Էստոնիայի աշխատավորները տապալեցին բուրժուական կարգերը և իրենց երկրներում Սովետական իշխանություն հաստատեցին:

Նոր էր լրացել այդ ցնծալից տոնի մեկ տարին, երբ մեր երկրի վրա հարձակվեցին ֆաշիստական զավթիչները: Լատվիայի, Լիտվայի ու Էստոնիայի աշխատավորները սովետական ամբողջ ժողովրդի հետ ոտքի ելան պայքարելու մեր Հայրենիքի ազատության համար: Սովետական Բանակի շարքերում, պարտիզանական ջոկատներում նրանք չտեսնված քաջագործություններ էին կատարում: Պատերազմի հաղթական ավարտումից հետո, չնայած ֆաշիստական զավթիչների հասցրած ավերածություններին, Լատվիայի Լիտվայի և Էստոնիայի տնտեսությունն արագ թափով զարգացավ: Հիմա արդեն այդ ռեսպուբլիկաներում կան բազմաթիվ գործարաններ, որոնք արտադրում են խոշոր հիդրոտուրբիններ, վագոններ՝ էլեկտրական երկաթուղիների համար, բարդ էլեկտրասարքավորումներ, հաստոցներ և շատ ուրիշ բաներ:

Ընդմիշտ վերջ է տրված կուլակային ստրկացմանը: Ստեղծվել են կոլտնտեսություններ ու սովխոզներ: Դաշտերում աշխատում են հզոր տրակտորներ, կոմբայններ և գյուղատնտեսական այլ մեքենաներ: Վաղուց է, ինչ վերացվել է գործազրկությունը, չկան անգրագետներ: Հիմա սովորում են ոչ միայն բոլոր երեխաները, այլև մեծահասակները: Բոլորի համար լայնորեն բացվել են համալսարանների, ինստիտուտների ու տեխնիկումների դռները:

Աճել ու ծաղկում է այդ ռեսպուբլիկաների արվեստը, գրականությունը, կուլտուրան:

Այդ երեք տասնհինգամյա ռեսպուբլիկաները սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում որպես հավասարների մեջ հավասար կառուցում են կոմունիստական հասարակարգի նոր շենքը: Տպագրում ենք լատվիական գրողների գործերից:

# ՀԱԿԱՆԵՐ

(Հեքիաթ)

Ա. ԱՐՄԱՆԻՍ

Նկ. Վ. ՎԱԼԴՄԱՆԻՍԻ
(Արվեստի վաստակավոր գործիչ)

*Ինը հսկաների ուժով Եկաբը բարձրացրեց պողպատե ահագին բահը:*

*— Ի՞նչ ես անում, խենթո՛ւկ, սպասիր,— գոչեց ավազաբլուրը և նրան կառչած խոտը կարծես փշաքաղվեց:— Ի՞նչպես ես դու համարձակվում ինձ կպչել:*

*Եկաբը չի լսում: Նա մխրճում է անջատիչը: Բահը օդ բարձրանալով շեշտակի իջնում է և երկաթե ժանիքները խրում բլրի կողը:*

*— Օ՜խ,— նվում է բլուրը:*

*Իսկ Եկաբը շարժում է լծակը և գլորդացնելով էքսկավատորի մոտորը, բարձրացնում է վիթխարի բահն ու ավազաշերտեր թափում ճահճուտի մեջ: Եկաբից քիչ այն կողմ Անդրեյն է, Անդրեյից այն կողմ՝ Վասիլին, և բոլորի ձեռքերին էլ միմի այդպիսի հսկայական բահ կա: Նրանք հողակոշտերը ճանկում և թափում, հա թափում են ճահիճը: Եկաբը լցնում է ավազը, որ նստում է ճահճուտի կոկորդում և խեղդում:*

*— Է՜յ, այս ո՞վ է ավազն աչքերս լցնում,— բողոքում է ճահճուտի գորտը և անատամ բերանը բաց ու խուփ անելով կռկռում:— Այդ դու ես հա՞, չարաճճի Եկաբ:*

*Բայց Եկաբը պատասխանի փոխարեն նորից է բարձրացնում բահը և կարմրավուն ավազի ահագին կույտը թափում ճահճի մեջ:*

*— Կվա՜, կվա՜, կվա՜,— կռռում է մի պառավ*

գորտ,— միլիցիոնե՜ր, օգնությո՜ւն, ավազն ըլուրը շարժվում է դեպի ճահիճ, օգնությո՜ւն...

Սակայն նա լռեց, մնալով թափվող մի նոր ավազակույտի տակ։

— Ես անձնատուր չեմ լինի. ինձ հետ կապված են ստորերկրյա ջրերը,— խեղդվելով խոխոացնում է ճահիճը։

Իսկ մի տասնյակ գորտ իրենց գցում են մոտակա լճակը։

— Կար ճահիճ, էլ չկա, ո՜րդ...

— Օ՜խ, այդ հսկա բահավորները, այդ նրանք արեցին։ Ընդունիր մեզ, ընդունիր, մե՜ծ լիճ...



Ճահիճը մեռնում է...

— Ախ, սիրելի դուք ճահճի՞ց եք,— մոտենալով գորտերին, լողակները տարուբերելով ասաց ալեհեր ծերուկ ձուկը,— և այդպես՝ նահանջեցիք, լքի՞ք ճահիճը, է՜խ, ես լինեի այնտեղ, նրանք ինձ ոչինչ չէին կարող անել։

— Նայիր հա, հանկարծ լիճդ չցամաքեցնեն, ո՛րդ-ո՛րդ,— թռչելով ուղիղ ձկան խռիկների մոտ կռռաց գորտը,— թոռս ասում է, որ հսկայական խողովակներ է տեսել, որոնք պետք է իջեցնեն լճի մեջ։

— Չի կարող պատահել,— գլուխն օրորեց ալեհեր ձուկը,— ես թույլ չեմ տա, ես եմ այստեղ տերը, ե՜ս...,— և նա պոչն այնպես թափահարեց, որ շուրջը փրփուր գոյացավ։

* * *

— Այս ի՞նչ է կատարվում, կարծես բարձրացնում են ինձ.— Հենց այդ օրը, այդ նույն րոպեին Կիշ լճից 150 կիլոմետր հեռավորության վրա, էստոնական սահմանի մոտ զարմանում էր հինավուրց, մամռապատ Սեդա ճահիճը։

Եվ այստեղ էլ, ինչպես Կիշ լճի մոտակայքում, բարձրացան երկաթե հսկայական բահերն ու ամբարձիչ կռունկները։ Նրանք բաց էին անում խորունկ ջրանցքներ, որտեղով դեպի Սեդա, Գաույա գետերն ու ծովն էին հոսում ճահճի ժանգագույն, թանձր ջրերը։

Հնում մարդիկ վախենում էին գալ այստեղ։ Միայն փորձված գայլն էր անցնում տորֆի կիրճերով։ Իսկ ինչ է կատարվում հիմա։

Հինավուրց ճահճուտի չորս կողմերով անդադար գալիս գնում էին բեռնատար ավտոմեքենաներ, նրանք տանում էին չորացրած վառելանյութ տորֆը։

— Ի՞նչ ես ուզում ինձնից,— աչքերը ակնրապին հառելով վարորդ Վալդիսին հարցրեց կարմրավուն տորֆը.— չէ՞ որ ես քեզնից մեծ եմ, իսկ դու ինձ անհանգստացնում ես։

— Լաց մի՛ լինի, ծերո՛ւկ, դու կօգնես մեզ կառուցել նոր կյանք։ Մինչև այսօր դու անպետք ընկած էիր, այսօր դու կլինես մեր օգնականը. հասկանո՞ւմ ես դու այս բոլորը։

— Իսկ ինչո՞վ պիտի ես խեղճ ճահիճս օգնեմ ձեզ։

— Մենք քեզ կչորացնենք և տորֆը կտեղափոխենք, որտեղ հարկավոր է. տեսնո՞ւմ ես, այնտեղ, հեռվում երևում են Ռիգայի սպիտակ աշտարակները, տեսնո՞ւմ ես այն մեծ նորակառույցը։

— Ի՞նչ բան է դա։

— Ջեկ։

— Ոչինչ չեմ հասկանում։

— Ռիգայի Ջերմաէլեկտրոցենտրալը,— կռանալով, ուղիղ ճահճի ականջի մեջ գոռաց Վալդիսը.— այնտեղ քեզ են սպասում հսկայական հնոցները, տոննաներով է քեզ խժռելու կրակը։ Օրական երեք գնացք պիտի գան քեզ մոտ, տորֆ լցնեն ու տանեն։ Դու պիտի տաքացնես ամբողջ քաղաքը, մեծից մինչև փոքրը։ Դու պիտի պտտեցնես հազարավոր մեքենաներ, վառես միլիոնավոր լապտերներ։

— Իսկ ես, ես ինչ պիտի անեմ, որտե՞ղ պիտի ես պատսպարվեմ հիմի, որտե՞ղ տո՜ւ,— պոչը մեջքի վրա ծալելով ոռնաց գայլը։

Պատասխանի փոխարեն հնչաց մոտորը և գայլը պո՜չ, փախավ։ Իսկ Եկաբն իր հսկա բա-

հով խորացել էր վերջին ճահճի մեջ և դուրս մղելով ժանգաջուրը չորացնում էր այն։

— Օ՜յ,— հառաչում էր ճահիճը և նահանջում։

Եկարին օգնում էին սովետական հողի եղբայրները՝ ռուսները, ուկրաինացիները, բելոռուսները։ Նրա օգնականն էր բրիգադիր Աննան։

— Եկա՛ր, այստեղ արդեն բավական է ցեմենտ-բետոնը, հիմա տուր այս կողմ,— ասում էր հզոր աղջիկը և իր հուժկու ձեռքերով պտտում ամբարձիչ մեքենայի ղեկը։

Երբեմնի ճահճուտների վայրում բարձրանում էր բազմահարկ մի շենք։

Եկավ խստաշունչ ձմեռը. սառնամանիքն աչքերը չռեց մարդկանց վրա՝ այս ինչո՞վ են զբաղված. հիմա ես կսառեցնեմ սրանց։ Մինուս տասը, տասնհինգ, քսաներեք, քսանութ, իսկ որմնադիրներն ու բետոնագործները չեն իջնում անավարտ հարկերից։ Ներքևից երկաթե կռունկները բարձրացնում էին տաք գոլորշի արձակող կրաշաղախը։

— Աննա, ընդունիր, քանի չի սառել շաղախը։

— Ա՜, սրանք իմ մատները այրեցին,— դժգոհեց սառնամանիքը։

Իսկ շենքը բարձրանում էր և արդեն ավարտվում էր վերջին հարկը։

— Այն ի՞նչ է այնտեղ, նայեցեք,— հարցնում էին իրար Ռիգայի հին գործարանների ծխնելույզները։— Աքլո՛ր, չգիտե՞ս դու, ո՞րտեղից հայտնվեց այս։

Հարցնում էին նրանք տանիքին ամրացրած աքլորին, ցույց տալով երկնքի մեջ խոյացած հսկա մի ծխնելույզ։

— Ես կանգնած եմ այս տանիքի վրա արդեն երկու հարյուր տարուց ավելի, և ինձնից բարձր ոչինչ չեմ տեսել, իսկ սա՞... չեմ հասկանում.— և աքլորը ցանկացավ թափահարել թևերը, բայց նրանք ամուր կպած էին կողքերին և չշարժվեցին։— Ահա այնտեղ անցյալ տարի կառուցվեց մի վեցհարկանի շենք, այս ուղղությամբ էլ, էլի մի տասնյակ այդպիսի շենքեր, հնարավո՞ր է թվել։ Ահա Ռիգայի նոր հյուրանոցը, կոլտնտեսականների պալատը՝ քսան հարկանի։ Կար ժամանակ ամենից բարձրն էի, իսկ հիմա,— նորից թախծեց, աքլորն ու մնաց իր հավիտենական դիրքում։ Իսկ հինավուրց գործարանների ծխնելույզները միանգամից իջան, ցածրացան նորակառույց հսկաների առաջ խոնարհվելով։

Եկարը Կիշ լիճն իջեցրեց տուրբինները։

— Այդ ի՞նչ ես անում,— զարմացավ լիճը։

— Ջուր է հարկավոր։

— Մեծ բա՞ն է, ինչքան ուզում ես վերցրու, թեկուզ հազար դույլ։

— Հա՛-հա՛-հա՛,— ծիծաղեց Եկարը,— իբր թե շատ ասացիր. ինձ հարկավոր է օրական այնքան ջուր, որքան խմում է Ռիգայի բնակչությունը մեկ ամսում։



— ... չեմ հասկանում։

— Օ՜, ես կչորանա՞մ,— գոչեց լիճը, իսկ ափերին ձուկը զայրացած խոսեց.

— Ինչպե՞ս թե, ապա ես որտե՞ղ պիտի լողամ. մի դույլ անգամ չեմ տա, ջուր ինձ էլ է պետք։

Այդ ժամանակ, հենց ափերին քթի տակ գոյացավ հսկայական ջրապտույտ և վիթխարի տուրբինը կլանեց ջրի առաջին հոսանքը։ Քիչ մնաց կուլ գնար և ձուկը. սա թպրտաց-թպրտաց ու մի կերպ ծլկեց լճի ամենախոր տեղը, տիղմի մեջ։

Ջուրը հասավ ջերմաէլեկտրակայանի շարժիչներին, պտտեցրեց այն, և ի՜նչ, Լատվիայում չմնաց մի գյուղ, որտեղ չվառվեր էլեկտրական լույսը։

Սա հեքիա՞թ է, այո, իհարկե, հսկաների հեքիաթ. միայն ճիշտ այնպես, ինչպես կյանքում է լինում։ Իսկ հսկաները սովետական մարդիկ են. մեր մարդիկ...

Փոխադրեց՝ ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՄԱՌ

ՊԵՏԵՐ ՍԻԼՍ

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

Պիոներական մեր ճամբարում
Օրերն ուրախ են այնքա՜ն,
Նոր ուժեր ենք մենք ամբարում,
Կոփում և՛ կամք, և՛ մկան...

Մեր ճամբարը փռված անծայր
Կապույտ ծովի ափերին,
Լողարաններ, ծաղիկ ու ծառ,
Անտառներ խիտ ու մրին...

Ամենից վեր դրոշն է մեր,
Տե՛ս, ինչպես է ծածանվում.
Շուրջդ ամռան ոսկե արև...
Պառկի՛ր այրող ավազում:

Ե՛վ խաղում ենք, և՛ լողանում.
Ի՜նչ պայծառ ես դու, ամա՛ռ.
Բայց ամենից լավ ճամբարում
Այդ խարույկն է բոցավառ:

Ապա երգեր ու արշավներ...
Ծույլն է մի տեղ միշտ նստում.
Մենք դպրոցին որպես նվեր
Հերբարիում ենք պատրաստում:
Կգանք նորից դպրոցը մեր



Թարմ ուժերով ու առողջ.
— Խոստանում է լավ սովորել
Դասարանը մեր ամբողջ...

# ԾՈՎԱՅԻՆ ԴԱՇՏԵՐԻ ԲԵՐՔԸ

Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ
(Դեղագիտական գիտությունների թեկնածու)

*Սովետական Միության սահմանները ողողում են երեք օվկիանոս և տասներեք ծով։ Այդ օվկիանոսներն ու ծովերը փոթորկի ժամանակ ափ են նետում զգալի քանակությամբ ջրիմուռների խառնիխուռն կծիկներ...*

*Գոյություն ունեն 13 000 տեսակի ջրիմուռներ։ Կան այնպիսի ջրիմուռներ, որ ունեն մի միլիմետրից պակաս երկարություն, բայց կան այնպիսիներն էլ, որոնց երկարությունը հասնում է մինչև երեք հարյուր մետրի։ Տաք և սառը ծովերի ջրիմուռները տարբեր են, նրանք տարբեր են նաև միևնույն ծովերի տարբեր խորություններում։*

*Ջրիմուռները հրաշալի կեր են հյուսիսի ծովափնյա շրջաններում ապրող անասունների, ինչպես նաև ձկների համար։ Ոմանք կարող են կարծել, թե ջրիմուռները շատ ջրալի են և քիչ սննդարար, մինչդեռ այդպես չէ։ Օրինակ՝ վարունգն ու կաղամբն ավելի ջրալի են, քան ջրիմուռները։*

*Ճապոնիայում և Չինաստանում ջրիմուռների որոշ տեսակներ մարդիկ օգտագործում են որպես կերակուր։*

*Ջրիմուռներն ունեն նաև բուժիչ նշանակություն։ Ծովափից հեռու ապրող բնակիչները շատ հաճախ հիվանդանում են խպիպով։ Մարդու վահանաձև գեղձերն ուռչում են և սեղմում կոկորդը։ Այդ հիվանդությունը բուժում են ջրիմուռներով։ Մարդիկ երկար ժամանակ չգիտեին այդ հիվանդությամբ տառապողների վրա ջրիմուռների ունեցած բարերար ազդեցության գաղտնիքը։ Բայց հետագայում պարզվեց, որ դա ջրիմուռներում եղած յոդի մեծ պարունակության հետևանքն է։*

*Այժմ ծովային ջրիմուռները յոդի ստացման գլխավոր հումքն են։ Բժշկության մեջ անհրաժեշտ յոդի մեծ մասը ստացվում է ջրիմուռներից։ Ջրիմուռները յոդը կուտակում են ծովի ջրից։ Լամինարի ջրիմուռը երկուհարյուր անգամ ավելի շատ*

յոդ է պարունակում, քան ծովի ջուրը։ Նրա մի կիլոգրամում կա տաս գրամ յոդ։ Յոդն ստացվում է նաև նավթահանքերի անցքերից ցայտող ջրերից։

«Յոդ» հունարեն նշանակում է «մանուշականման»։ Այդ անունը նա ստացել է իր գոլորշիների մանուշակագույն լինելու պատճառով։ Յոդը Դ. Ի. Մենդելեևի աղյուսակի 53-րդ էլեմենտն է։ Դա գրաֆիտի նման ամուր բյուրեղային նյութ է։ Յոդը ջրից գրեթե հինգ անգամ ավելի ծանր է։



Յոդը գտնվում է օրգանիզմի բոլոր հյուսվածքներում։ Ամենից քիչ յոդ կա մազերում և եղունգներում և ամենից շատ վահանաձև գեղձերում։ Մարդկային օրգանիզմում եղած յոդի կեսից ավելին գտնվում է այդ գեղձերում։

Բնության մեջ յոդի միացությունները գտնվում են ամենուրեք՝ հողում, ջրում, օդում, բույսերի ու կենդանիների օրգանիզմներում։

Յոդի ընդհանուր պաշարը երկրակեղևում բավական մեծ է. բայց նա շատ ցրված էլեմենտ է։ Յոդով ամենահարուստ հանքատեսակները պարունակում են ընդամենը մեկ տոկոս յոդ, իսկ այդպիսի հանքատեսակները տարածված են ոչ ամենուրեք։ Ծովի ջրում կա $\frac{5}{100\ 000\ 000}$ մաս յոդ։ Աննշան է յոդի քանակությունը նաև օդում։

Մեկ տոննա ցորենը պարունակում է տաս միլիգրամ յոդ։ Դա նշանակում է, որ քանի պարկ ալյուրի մեջ կորեկի երկու հատիկի չափ յոդ կա։

Ջրիմուռներից ստացվում է նաև քացախաթթու, ացետոն, սպիրտ, թուղթ, բարձրորակ արհեստական մետաքս և այլ նյութեր։ Մեր երկիրը ժամանակակից արդյունաբերության համար կարևոր այդ հումքի հսկայական պաշարներ ունի։

Բժշկությունից բացի յոդը օգտագործվում է նաև այլ բնագավառներում։ Նրա արծաթի հետ ունեցած միացությունները կիրառվում են զգայուն ֆոտոժապավեններ պատրաստելու համար։ Յոդի օրգանական միացություններից ստացվում են բարձրորակ՝ կարմիր, կապույտ, կանաչ և մանուշակագույն ներկեր։

Յոդի ներկերը որոշ ջերմաստիճանից հետո փոխում են իրենց գույնը։ Այդ հատկությունից օգտվելով յոդի ներկերով ներկում են այնպիսի սարքավորումներ, ուր ջերմաստիճանի բարձրացումը փոխում է սարքավորման գույնը և ազդանշան հանդիսանում, որ ավելին տաքացնել չի կարելի։ Յոդի միացություններից պատրաստում են հատուկ բևեռացնող ապակիներ, այսպես կոչված պոլյարոիդներ, որոնք բաց են թողնում միայն մեկ ուղղությամբ ճոճվող լույսը։ Տեխնիկայում այդ տեսակի ապակիները մեծ կիրառում ունեն։

# ՄԵՐ ԱՅԳՈՒՄ

ՌՈՒԲԻԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

(Երևանի 47-րդ դպրոցի աշակերտ)

Ես նստել եմ մեր այգում
Եվ նայում եմ երկնքին,
Ճնճղուկներն են թռչկոտում...
Այնպե՜ս լավ է մեր այգին։

Պայծառ արփին երկնքից
Ողջունում է ծառերին,
Խենթ առուն էլ հրճվանքից
Կարկաչում է ճնճղուկին...

Իսկ գեղձենին ամորխած
Մտորում է ինչ-որ բան,
Ես նայում եմ հիացած,
Ես ուրախ եմ անսահման։

# ԻՄ ԲԱԺԻՆԸ ՊԱՀԵ՞Լ ԵՔ

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Թուշն ու բերանը լիքը՝
Ճաշ է ուտում Լալիկը։



— Հա՛ֆ, հա՛ֆ, հա՛ֆ, հա՛ֆ…
— Ո՞վ եկավ։
— Ես ձեր սևուկ Քուչիկն եմ,
Ես թավամազ պոչիկն եմ.
Պահապան եմ ձեր բակին,
Մոտ չեմ թողնում ոչ մեկին։
Շատ եմ հոգնել ես գործից,
Մի քիչ ապուր տվեք ինձ։
Իմ բաժինը պահե՞լ եք…
— Մյա՜ու, մյա՜ու…
— Ո՞վ ես դու։
— Ես ձեր փափլիկ փիսիկն եմ,
Ես մոխրագույն Զիգիկն եմ,
Պահպանում եմ մառանը,
Մոտ չեմ թողնում մկանը։
Շատ եմ հոգնել ես գործից,
Մի քիչ մածուն տվեք ինձ։
Իմ բաժինը պահե՞լ եք…
— Կըր՛ք-կըր՛ք-կա՛ռք-կա՛ռք…
— Ո՞վ է այդ։
— Ես ձեր սիրուն հավիկն եմ,
Ձեր պուտպուտիկ Զալիկն եմ,
Բնում նստել եմ երկար,
Ձու եմ ածել ձեզ համար։
Շատ եմ հոգնել ես գործից,
Մի քիչ հատիկ տվեք ինձ։
Իմ բաժինը պահե՞լ եք…
Դուռը բացեց մայրիկը.
Ու ներս եկավ շնիկը,
Ու ներս եկավ փիսիկը,
Ու ներս եկավ հավիկը։



— Այս մի թասը՝ շնիկին,
Այս մյուսը՝ փիսիկին,
Այս մի բուռը՝ հավիկին,
Այս խնձորն էլ Լալիկին…

# ԱՆՀԱՇՏ ՔՈԹՈԹՆԵՐԸ

*(Հունգարական հեքիաթ)*

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Երկու եղբայր արջուկներ,
Իրենց որջից դուրս եկել,
Գնում էին և հանկարծ
Կանգ են առնում զարմացած:
Տեսնում են՝ ի՞նչ, ծառի տակ,
Ինչ-որ ճերմակ մի գնդակ.
Հոտոտում են անհամբեր.
— Ջա՛ն, պանիր ենք մենք գտել:
— Այս կտորն ինձ, այս էլ քեզ:
— Համաձայն չեմ քեզ հետ ես.
Քո բաժինը շատ է, շատ,
Իմը քիչ է, չեղավ այդ:
Հենց այդ պահին սնկի պես
Գետնից ծլեց մի աղվես...
— Դուք իզուր եք ջուր ծեծում,
Ես ձեզ կօգնեմ այս գործում:
Մեծ կտորից նա կտրեց
Ու կտրածը կուլ տվեց...
Մեծ եղբայրը գայրացավ.



— Վա՛յ, կտորն այս փոքրացավ:
Աղվեսն էլի քիչ կտրեց.

Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Այդ պատառն էլ կուլ տվեց:
Փոքրը տեղից վեր կացավ.



— Տե՛ս, կտորն այս փոքրացավ:
Կրկին չափեց, չափչփեց,
Մի կտորն էլ կուլ տվեց:
— Տեսա՞ք, դժվար բան չկար,
Բաժանեցի ինչ որ կար:
Դարձավ ուղիղ երկու կես,
Լավ աչքաչափ ունեմ ես:
Մնաք բարով,— նա ասաց.
Գլուխն առավ ու գնաց:
Պանրից մնաց մի բերան,
Քոթոթներն էլ այն կերան.
Միայն համը զգացին,
Բայց թե քաղցած մնացին:

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ԼԵՆԻՆ»

*Ամբողջ երկրագնդի աշխատավոր մարդիկ անհուն սիրով են լցված մեծ Լենինի նկատմամբ։ Այդ մասին է գրել իր գեղեցիկ պոեմներն ու բանաստեղծությունները Եղիշե Չարենցը։ Նրա այդ երկերը պատանի ընթերցողների համար առանձին գրքով Հայպետհրատը լույս է ընծայել «Լենին» ընդհանուր խորագրով։*

*Իր «Բալլադ Վլադիմիր Իլյիչի, մուժիկի և մի զույգ կոշիկի մասին» հրաշալի գործում Չարենցը հուզիչ կերպով պատկերում է քաղաքացիական պատերազմի ծանր օրերը։ Այդ ժամանակ Լենինը ղեկավարում էր ժողովրդի պայքարը մինչև ատամները զինված թշնամիների դեմ։ Նա շատ, շատ էր զբաղված, բայց ու-*

ատկան հեռավոր մի գյուղից, նրա մոտ է գալիս մի մուժիկ։ Մեծ




առաջնորդը ժամանակ չունի, բայց ընդունում է մուժիկին, և մինչոր-դում, որ նրան մի զույգ կոշիկ տան։

Այդ փոքրիկ դեպքը ցույց է տալիս, որ Լենինը շատ էր սիրում աշխատավորներին։ Հուզիչ է նաև «Լենին քեռին» պատմը։ Բանվորի որդի Իվանը լսում է Լենինի մասին։ Հայրը պատմում է նրան, թե ինչպես է մեծ առաջնորդը պաշտպանում աշխատավոր մարդկանց։ Եվ փոքրիկ տղան երազում է տեսնել Լենին քեռուն։ Երբ տղան իմանում է, որ Լենինը քաղաքի հրապարակում պիտի խոսի, ինքն էլ է գնում այնտեղ։ Որքան է ուրախանում նա, երբ տեսնում է մեծ առաջնորդին։ Նա ուզում է գնալ Լենինի մոտ, ասել նրան, որ ուզում է դառնալ շոֆեր կամ կարմիր օդաչու...

«Լենինն ու Ալին» գործում քյուրդ բանվոր Ալին, լսելով Լենինի մահվան լուրը, անսահմանորեն վշտանում է։ Տրապիզոնում նա կես գիշերին մտնում է Սովետական հյուպատոսի շենքին և խոնարհած գլխով, արցունքոտ աչքերով իր խոր վիշտն հայտնում մեծ առաջնորդի մահվան առթիվ։

«Լենին» բանաստեղծության մեջ Զարենցը պատկերել է մեծ առաջնորդի անմահությունը։ Լենինն իր իմաստությունն ու ուժը տվել է ամբողջ աշխարհի տանջված մարդկությանը։ Դրա համար էլ անմահ է...

## «ԶՐՈՒՅՑՆԵՐ ԽԱՐՈՒՅԿԻ ՇՈՒՐՋԸ»

Հետաքրքիր է իմանալ, թե ինչպես են ապրում կապիտալիստական երկրների երեխաները։ Ստեփան Կուրտիկյանի «Զրույցներ խարույկի շուրջը» գրքում նկարագրվում է այդ երեխաների կյանքը։ Ահա «Լի Ջանը» փոքրիկ պատմվածքը։ Չինաստանում դեմոկրատական կարգեր դեռ չէին հաստատվել։ Պատանի Լի Ջանը լսում է ժողովրդի ազատարար Մաո Ցզե-դունի պարտիզանական ջոկատի մասին։ Պարտիզանների քաջ ղեկավարը կոշիկ չունի։ Փոքրիկ Լի Ջանը հոր կոշիկները տանում, նրան է նվիրում։ Պատանին ուզում է լինել պարտիզանական ջոկատում և փոխարինել իր հորը։ Այստեղ երևում է չին ժողովրդի սերը դեպի իր առաջնորդ Մաո Ցզե-դունը։ «Ընկերուհիները» պատկերում է Հնդկաստանի երեխաների ծանր վիճակը։

Գրքում զետեղված է նաև «Եղբայրություն» ակնարկը։ Այնտեղ պատմվում է Բուլղարիայի հռչակավոր հայ պարտիզանուհի Սաշկայի՝ Հերմինե Թագվորյանի մասին։ Նա ֆաշիստների դեմ մղվող պատերազմի օրերին նույն սխրագործությունը կատարեց, ինչ ռուս ժողովրդի հերոսուհի Զոյա Կոսմոդեմյանսկայան։ Ծանր տանջանքներից նա մեռնում է, բայց չի մատնում իր պարտիզան ընկերներին։

Գրքի լավագույն պատմվածքներից են նաև «Վրեժ Հունոն և իր ընկերները», «Պեոկան», «Գորշ շինելով երաժիշտը»։ Դրանք պատկերում են սովետական մարդկանց սխրագործությունները՝ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։




Ց. ՇՈՂԵՆՑ




### ԳՐԱԿԱ՛Ն ԼՈՏԱՑՈՏԱ

Խաղացողները՝ 10—20 հոգի: Խաղավայրը՝ դաշտ, հրապարակ, բացատ: Խաղացող խմբերը կանգնում են ստարտի գծին՝ իրարից երկուական քայլ հեռու ֆինիշի գծի վրա, խմբերի դիմաց կանգնել են մեկական դատավոր: Դատավորների մոտ, խաղացողների քանակությամբ, գրված են գրողների և նրանց գրվածքների անունները:

Խաղն սկսվելուն պես, խմբերի առաջին խաղացողները վազով գնում են կանգնում ֆինիշի գծի մոտ, իրենց դատավորի առաջ: Դատավորն անմիջապես ասում է գրողի անունը, օրինակ՝ Մաքսիմ Գորկի: Խաղացողն անմիջապես տալիս է Մ. Գորկու գրվածքի անունը: Ճիշտ պատասխանելու դեպքում, դատավորը ասում է՝ «Ճիշտ է»: Խաղացողը վազով վերադառնում է դեպի իր խումբը: Խաղը շարունակում է հաջորդը: Սխալվելու դեպքում, դատավորն ասում է՝ «Սխալ է»: Խաղացողը չի կարող նա վերադառնալ, մինչև որ տվյալ հեղինակի գրվածքի անունը ճիշտ չասի: Հաղթում է այն խումբը, ...րել խաղը և սխալներ չի արել:

ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

## Ե՞րբ է տեղի ունեցել

### ԿՐՈՍՎՈՐԴ

Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ




Տառերի փոխարեն վանդակներում պետք է գրել թվեր, որոնք կազմեն ներքևում բերված դեպքերի տարեթվերը:

*ՈՒՂՂԱՀԱՅԱՑ*

1. Մ. Գորկին գրեց իր հանճարեղ «Մրրկահավի երգը», 2. Առաջին հիշատակությունը Մոսկվայի տարեգրության մեջ, 3. Վասկո Դե Գաման հայտնագործեց Հնդկաստան տանող ծովային ճանապարհը, 5. Մոսկվայից, Հյուսիսային բևեռի վրայով, աշխարհում առաջին անգամ դեպի ԱՄՆ թռավ Վ. Չկալովը, 7. Ծնվեց Վ. Տերյանը, 8. Ճորտատիրության վերացումը Ռուսաստանում, 9. Ծնվեց Մ. Վ. Լոմոնոսովը, 10. Սկսվեց ֆաշիստական զորքերի ջախջախումը Մոսկվայի մոտ, 11. Ալեքսանդր Նևսկու հաղթությունը գերմանական ասպետների դեմ (սառցաջարդը), 12. Ռոբերտ Պիրին հայտնաբերեց Հյուսիսային բևեռը, 15. Ծնվեց ուզբեկ մեծ բանաստեղծ Ալիշեր Նավոին, 17. Կուլիկովյան ճակատամարտը, 18. Վրաստանի միացումը Ռուսաստանին, 19. Ծնվեց Մ. Յու. Լերմոնտովը:

*ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ*

1. Երմակի սիբիրյան արշավանքի սկիզբը, 3. Մագելլանը դուրս եկավ շուրջերկրյա ճանապարհորդության, 4. Ծնվեց Հ. Պարոնյանը, 6. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, 8. Ծնվեց Վ. Գ. Բելինսկին, 10. Փարիզյան Կոմունայի հռչակումը, 12. Ծնվեց Հ. Թումանյանը, 13. Ա. Ս. Պոպովը ցուցադրեց իր հնարած առաջին ռադիոընդունիչը, 14. Ծնվեց ադրբեջանական մեծ գրող Նիզամի Գյանջևին, 16. Մինինի և Պոժարսկու աշխարհազորը ազատում է Մոսկվան լեհական նափշտակիչներից, 18. Ռոալդ Ամունդսենը հայտնաբերեց Հարավային բևեռը, 20. Ռուս ժողովրդի ազատագրումը թաթարական լծից, 21. Արտամոնովը հնարեց հեծանիվը, 22. Ծնվեց միջնադարի հայ խոշորագույն բանաստեղծ Ֆրիկը:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ Նկ. Գ. ՄԱԼԱՅԱՆԻ

Խմբագիր՝ ՏԱԼՅԱՆ Վ.
Խմբագրական կոլեգիա՝ ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕԶԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06

ՎՖ 11781: Պատվեր 636: Տիրաժ 5000: Տպագրական 3½ մամուլ: Ստորագրված է տպագրության 14/VII 1955 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65:

# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## ԾՈՎԱՅԻ՛Ն ԲԱՋԸ՛Ն

1855 թվականի հունիսի հաճույքին ամբողջ Ռուսաստանով կայծակի արագությամբ տարածվեց տխուր մի լուր: Պ. Ս. Նախիմովը ծանր վիրավորվել էր: Երկու օր հետո Պ. Ս. Նախիմովը վախճանվեց: Մնաց Նավարինի, Սինոպի, Սևաստոպոլի հերոսը:

Պավել Ստեպանովիչ Նախիմովը ծնվել է 1803 թվականին Սմոլենսկում: Նա շատ լավ էր սովորում ծովային դպրոցում և տասնհինգ տա-



րեկան հասակում արդեն ներքապա էր: Անպատմելի էր նրա ուրախությունը, երբ Լազարևը նրան հրավիրեց ծառայելու իր «Կրեյսեր» ֆրեգատում: Այստեղ նա դարձավ լեյտենանտ: Եռամյա աշխարհաշրջիկ նավարկությունից հետո, 1826 թվականին փոխադրվեց «Ազով» նավը: Մի տարի հետո, այդ նույն նավով, Նավարինյան մարտում այնպես ջարդեց թյուրքերին, որ ծովային գործի հմտությամբ պարծեցող անգլիացիները մնացին զարմացած: Այդ հաղթանակի համար Նախիմովին շնորհվեց կապիտան-լեյտենանտի աստիճան և նրա կուրծքը զարդարվեց Գեորգիևյան խաչով:

Քառասուն հինգ տարեկան հասակում նա կոնտր-ադմիրալի աստիճան ստացավ և Սևծովյան չորրորդ նավատորմային դիվիզիայի առաջին բրիգադայի հրամանատարն էր:

1852 թվականին Նախիմովը դարձավ փոխ-ադմիրալ:

Մի տարի անց, հայտնի դարձավ, որ թյուրքերը ուժեր են կուտակում Սև ծովի ափերին՝ Ռուսաստանի վրա հարձակվելու համար: Նախիմովը ազդակյան բոլոր նախապատրաստությունները տեսնելուց հետո, նոյեմբերին սկսեց հետապնդել թյուրքական նավատորմը: Նա օգնության կանչեց ծովակալ Կոռնիլովին: Նոյեմբերի տասնութի լուսաբացին Նախիմովի նավատորմը մոտեցավ Սինոպին: Թյուրքական մարտկոցները որոտացին: Ռուսական էսկադրան պատասխան կրակ բացեց: Ռուսները այդ օրը ոչնչացրին թյուրքական էսկադրայի 3000 մարդուց բաղկացած անձնակազմը և գերի վերցրին ծովակալ Օսման փաշային: Հաղթանակը կատարյալ էր:

Մեր ծովայինները սովորել են Նախիմովից, ոգևորվել ու միշտ սիրել են նրան: Հայրենական Մեծ պատերազմի օրերին Նախիմովի շքանշանները զարդարում էին մեր անվեհեր նավաստիների կրծքերը:

## ՀԱՅ ՄԵԾ ԴՐԱՄԱՏՈՒՐԳԸ

«Պեպոյի» առաջին ներկայացման երեսնամյակի օրն էր: Պեպոյի դերը կատարում էր տաղանդավոր դերասան Գևորգ Չմշկյանը: Երբ վարագույրն իջավ, դահլիճը թնդաց ծափահարություններից: Վարագույրը բացվեց և բեմի վրա երևաց հուզված հեղինակը Չմշկյանի ձեռքը բռնած: Դահլիճում քար լռություն տիրեց:

—Գևո՛րգ ջան, այս բոլոր ծափերը, օվացիաները քեզ համար են, դու էիր, որ իմ Պեպոյին շունչ ու կենդանություն տվիր:

Դա Գաբրիել Սունդուկյանն էր:

Մեր դրամատուրգիայի հիմնադիր Սունդուկյանը ծնվել է Թիֆլիսում, 1825 թվականի հուլիսի տասին: Նախնական կրթությունն ստացել է տանը:

Գաբրիել Սունդուկյանը շատ էր սիրում մորը, որը ոչինչ չի խնայել որդու կրթության համար: Եվ նրա պիեսներում հանդես բերված բոլոր լավ մայրերը նրա մոր՝ Թեկղի Ռոտինյանի նման են:

Թիֆլիսում սովորելու ժամանակ, Սունդուկյանը աշակերտել է Խաչատուր Աբովյանին: Աբովյանի մոտ է նա սովորել ռուսաց լեզուն: Բարձրագույն կրթությունն ստացել է Պետերբուրգի համալսարանում: Չորս տարի հետո ավարտելով համալսարանը, արևելյան լեզուների թեկնածուի աստիճանով վերադառնում է Թիֆլիս: Դա 1850 թվականին էր:

Պետերբուրգում ուսանելու տարիներին Գ. Սունդուկյանը հաճախ է այցելել թատրոններ, տեսել ռուսական դերասաններին: Նա շատ է սիրել ռուս գրողներին, իսկ Օստրովսկու հետ անձամբ ծանոթ էր: Գոգոլի մասին էլ գրել է. «Գոգոլի անվան հետ են կապված իմ լավագույն հիշողությունները, այդ անվանը ես շատ եմ պարտական իմ սիրով դեպի թատրոնը»:

Սունդուկյանի պիեսները թարգմանվում էին կովկասյան ժողովուրդների լեզուներով և շարունակ բեմադրվում էին թատրոններում:



Մեծ դրամատուրգը գրել է ընդամենը տասներկու պիես՝ «Էլի մեկ զոհ», «Խաթաբալա», «Պեպո» և այլն: Առաջին պիեսն էր «Գիշերվա սարբը խեր է», որը ներկայացվել է Թիֆլիսում 1863 թվականի նոյեմբերի հաճույքին: Սունդուկյանը «Պեպոն» գրել է 1870 թվականին, բեմադրվել է 1871 թվականի ապրիլին: «Պեպոն» թարգմանված է մի շարք լեզուներով: Սունդուկյանի գործերի մեջ առանձնահատուկ տեղ է գրավում «Վարինկի վեչեր» պատմվածքը:

Սունդուկյանի հանդես գալը հայ գրականության մեջ մեծ նորություն էր: Նա առաջին անգամ բեմ է հանել աշխատավորին, որը մերկացրել է անխիղճ հարուստին:

Սունդուկյանը երազել է ժողովուրդների եղբայրություն: Ութսունյոթ տարեկան ծերունին գրել է՝ «Պետք է սիրել միմյանց՝ առանց խտրություն դնելու ազգի և կրոնի մեջ»:

Սունդուկյանը մեռավ 1912 թվականին ութսունյոթ տարեկան հասակում:

